# ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ

## ՀՌՉԱԿԱՒՈՐ ՄԵԾԻ ՈՒԽՏԻՆ

## ԱՅՐԻ ՎԱՆԱՑ

# ՍՐԲՈՅՆ ԳԵՂԱՐԴԱՅ

ՀԱՆԴԵՐՁ ՊԱՏՄԱԿԱՆ ԾԱՆՕԹՈՒԹԵԱՄԲՔ

---

ԱՇԽԱՏԱՍԻՐԵԱՑ

ՍՏԵՓԱՆՆՈՍ ՎԱՐԴԱՊԵՏ ՄԽԻԹԱՐԵԱՆՑ

ՄԻԱԲԱՆ ՍՐԲՈՅ ԱԹՈՌՈՅՍ ԷՋՄԻԱԾՆԻ

---

ՀՐԱՏԱՐԱԿԵԱՑ

ԱՐԴԱՐ ՍՏԵՓԱՆՆՈՍԵԱՆ ԳՈՒԼԱՄԻՐԵԱՆՑ

---

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅ ԿԱԹՈՂԻԿԷ ԷՋՄԻԱԾՆԻ

Ի ՎԱՂԱՐՇԱՊԱՏ

---

1873 — Ռ·ՅԻԳ·

ՀՐԱՄԱՆԱՒ

Տ. Տ. ԳԷՈՐԳԵԱՅ Դ.

ՎԵՀԱՓԱՌ ԵՒ ՍՐԲԱԶՆԱԳՈՅՆ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ.

# ՀՐԱՏԱՐԱԿՉԻ ԿՈՂՄԻՑ

ԽՈՐԻՆ ՑԱՐԳԱՆՔՈՎ

ԻՒՐ ՊԱՏՈՒԱԿԱՆ ՀԱՅ ԵՂԲԱՅՐՆԵՐԻՆ ՄԻ ՔԱՆԻ ԽՕՍՔ.

---

Երջանկայիշատակ մեր պանծալի նախնեաց անցեալ տխո՜ւր յիշատակարանները՝ ամեն մի մտածող անհատ ականատես լինելուն պէս կրակոտ իւր մտքի մէջ, փոքր առ փոքր մի առանձին վերացական նշմարողութիւն տիրել, մինչև որ՝ կրակոտ իւր սիրտը ճմլել և մի խո՜ր երևակայութեան մէջ ընկղմել. որովհետև մեր երանելի նախնիքը՝ աշխարհիս մէջ գեղեցիկ հեռատեսութեամբ՝ ամեն բան կատարելով մեր Ազգի համար, ամեն տեսակ անձնական զոհաբերութիւններ անելով՝ սկսել են յետոյ՝ թողնել ապագայիս համար, դարուց ի դարս ամենայն տեսակ սրտամաշ, սրտատոչոր և աղետալի յիշատակարաններ, սկսեալ ամենաշքեղ և զարմանալի յօրինուածովք ապարանք՝ դարպասք՝ պալատք՝ անհամար վանորայք, մենաստանք, տաճարք ևլն . . .

որոնց սքանչելի քանդակագործութիւնքը, և գեղեցիկ շինուածքը՝ ափշեցնում են միանգամայն ոչ թէ մի միայն Հայերիս ուշադրութիւնը, այլ և նոյն իսկ Եւրոպացի ճանապարհորդաց, գիտնականների քննադական խորին ուշադրութիւնը:

Ամէն մի նուիրական տեղ՝ ունի իր ձգտողական երևակայութիւնը, ամէն մի նուիրական վէմ՝ ունի իր առանձին խոր տխրութիւնը, ամէն մի դաշտ՝ որի վերայ Հայրենեաց սիրոյ՝ և ուղղափառ սրբազան Կրօնի համար պատերազմել են մեր երանելի քաջերը՝ ունի իր կողմնական, առանձին ցաւակցական տխուր տեսարանը . . . ամէն այն քարանձաւք՝ որոնց ձորերի միջոցաւ գնում են կարկաջահոս խոխոջիւն գետերը՝ ունին իրենց առանձնապէս զմայլեցուցիչ տեսարանը . . . :

Մենք իրաւամբ ենք ասում մեր նախնեաց՝ պանծալի, երջանկայիշատակ, և երանելի. վասն զի եթէ մեր անձնանուէր, [illegible] -- [illegible] Հայրենեաց սիրոյ համար մտածող նախնիքը, հաւատարմութեամբ չըշինէին վանքերը, մենաստանները, ևլն. ևլն. համարձակվում եմ ասել՝ որ մեր ջարդուփշուր եղած Ազգը, մինչև օրս չէր կարող հանդիսանալ այսքան քանակութեամբ, մեր ուղղափառ սրբազան

Կրօնիս ուղղ. հիմանց և սկզբունքի վերայ ճշմարիտ Հայ. որովհետև ամեն մի բըռնակալ իշխանութիւն՝ երբ մի փոքր յառաջ էր գալիս՝ սկսումէր իսկոյն մեր խըղճուկ Հայ եղբայրներին՝ համոզելով և ճընշելով՝ հաւատափոխ անել, խոստանալով նախապէս՝ մեծամեծ պարգևներ, իսկ յետոյ՝ սոսկալի տանջանք։—Բայց այս ամեն անտանելի միջոցների քայլափոխում, երբ մի հայեացք էին ձգում խեղճերը իրենց շուրջը,—ի՞նչ էին տեսնում, ով Հայեր.—տեսնումէին յանկարծ լեռների, դաշտերի, անտառների, քաղաքների, գիւղերի և քարանձաւների միջից բարձրացած վանքերի և եկեղեցիների գեղեցիկ գմբէթներ, որոնք՝ կարծես թէ, հաղորդելով ասումէին մեղմօրէն. «Ո՞ւր իմ զաւակունքս, չէ՞ թէ իմ «ծոցից ծնած՝ իմ կաթովս մեծացած՝ և «իմ գրկումս պահուած էք, այժմ ու՞ր էք «կամենում գնալ, օտար մօ՞ր գիրկ . . . «վա՜յ ձեզ, ապերախտ որդիք Հայաստանի . . . »: Հենց այս երևակայական մայրական գթալի բողոքը, ակնթարթ առ ակնթարթ սկսումէր նոցա խիղճը ճմլել . . . և վերջապէս՝ սրտները քաջացնել, մինչև որ պատրաստ էին՝ Հայրենեաց սիրոյ և Սրբազան Կրօնիս համար՝ տանել ողորմե-

լեքը՝ ամեն տեսակ վի՛շտքը, տառապա՛նքը, և նեղութի՛ւնքը։

Ահա՛, իմ պատուական ընթերցո՛ղք, տեսաք՝ թէ ի՛նչ մեծ նշանակութիւն ունի Ազգիս համար՝ մեր նախնեաց այսպիսի ան-գին յիշատակարանները, որ ամենայն մի Հայի սրտի մէջ արձանացրել են նախնեաց ազգային հարուստ յիշատակարանները, վե-հա՛նձն քաջութիւն, և անյաղթելի՛ արի-ութիւն, որո՛նք՝ ամեն մի անձնական զո-հաբերութիւնք սրտի հաճութեամբ յանձն առած են և կատարած, որ ո՛չ մի աշխար-հային երկիւղ չէ՛ կարողացել յաղթելու նոցա անձնասիրութեան, ո՛չ հո՛ւր՝ ո՛չ ջո՛ւր և ո՛չ մի ամենասոսկալի տանջա՛նք։

Ահա՛ ա՛յսպիսի ճշմարիտ ազգասիրու-թեան ընթացքով՝ բոլոր իւրեանց շրջան-ներում՝ միշտ մնացել են անձնանուէր, հա-րազատ և ճշմարիտ Հայ. որոնց մաքուր և ազնիւ արեան սերընդից յառաջացած եմք մենք երկրագնտիս վերայ՝ ամբողջ Հա-յերս.—բայց եղո՛ւկ անարժա՛ն և անմտա-ծող թոռներիս օրին։

Միշտ պէտք է ինկատի ունենալ՝ որ մե-զապիսի հին Ազգերը յառաջ են գալիս ի-րենց հին ու հարուստ յիշատակարաններով, և ապրում են ու մնում նո՛յնպէս նոցանով։—

Բայց շատ ցաւալի է տեսնել, այս Հայ-
րենեաց փրկութեան սքանչելի յիշատակա-
րանների համար, որ ամբողջ Արարատեան
աշխարհի կեդրոնի մէջ անգամ՝ մեր Հայ
եղբայրների ամենամեծ մասը, դեռ չգիտեն
իրենց սրբազան և խնկելի յիշատակարան-
ների վերայ գոնէ մի տեղեկութիւն, որ պա-
հանջած ժամանակին՝ դէմ կենային օտար
ազգաց խոչընդոտ խօսքերի առաջ։

Ու ահա այս առիթով ստիպուած՝ և
մեր եռանդին ու նպատակին համաձայն՝
այս մեր ազգային պարծանաց խնկելի յի-
շատակարաններից՝ այժմ հանդիսանումէ
մեր սիրական Հայոց Ազգի առաջ՝ “Ստո-
րագրութիւնն Այրի վանաց Սրբոյն Գե-
ղարդայ, հանդերձ հետաքրքրական պատ-
մական ծանօթութեամբք”։

Այս աշխարհ ձգելով ահա այս պա-
տուական աշխատասիրութիւնը՝ և ընծա-
յելով մեր ի բոլոր սրտէ սիրելի Հայրե-
նակցաց՝ հարկաւոր ենք համարում այս գրքի
մասին ասել մի երկու խօսք. — որ այս գիր-
քը՝ “Ստորագրութիւնն Այրիվանաց Ս. Գե-
ղարդայ”՝ ունի իւր մէջ պատմագրու-
թեան մի գեղեցիկ ոճ՝ որ ամենայն մի ըն-
թերցող Հայ՝ դիւրին կերպով կհասկանայ
Գրուածքը և կտայ քաղցրութիւն շարու-

նակելու մինչև վերջը.—գրքիս "հնաքրքրական պատմական ծանօթութիւնքը,"*) ևս, զարդարելով բարձրացնում են գրքի արժանաւորութիւնը, որ ամեն մի մտածող Հայու համար մե՜ծ նշանակութիւն ունի և այս մասը, (ինչպէս կնկատեն մեր սիրելի ընթերցասէր Հայ եղբայրները):

Սքանչացէք ուրեմն՝ ով մտածող, զգայուն, ազնիւ Հայեր, մեր արժանայիշատակ նախնեաց՝ մեծահաւատ գործերի և ընթացքի վերայ.—նայեցէք այն մեծամեծ պարգևների և յիշատակարանների վերայ, որոնք նուիրուել են բոլորը թագաւորական պայազատ ցեղերից,—դարձրէք իմ եղբայրներ, Ձեր խորին ուշադրութիւնը, և տեսէք այն վիմափոր եկեղեցիների վերայ վերջին աստիճանի զարմանալի աշխատասիրութիւն ունենալը:

Վերջապէս՝ ահա՛ այսօր մեր Ազգային գրականութեան մէջ մտաւ և այս գիրքը. որով Հայութեան գանձարանը մի գեղեցիկ մատենագրութեամբ ևս հարստացաւ:

Մեր, առհասարակ բաժանորդագրութեամբ հրատարակելու գլխաւոր և բուն

---

(*) Գրքիս ծանօթութիւնքը նոյն երեսի մէջ տպելու անյարմար լինելու պատճառաւ՝ տպուեցաւ առանձին՝ գրքի վերջը.

նպատակն է, (ինչպէս յայտնի է մերազնեայ շատերին *), որ կարելի եղածին չափ, փութով մտցնել մեր հրատարակութիւնը՝ մեր իրաւատէր խնե՛ղձ հասարակութեան մէջ:

Արժա՛ն ենք համարում, մեծաւ ուրախութեամբ յայտնել մեր ամենասիրելի Հայ եղբայրներին և քոյրերին՝ որ մեր հրատարակած "Երջանկայիշատակ Դաւիթ բէկի" պատմութեան համար, բարեբաղդաբար զանազան տեղերից քանի՛ քանի՛ շնորհակալութեան նամակներ ընդունեցինք. ընդունեցինք նա և՝ առանձնակի գոհունակութիւն և քաջալերութիւն՝ Եգգիս աշխատասէր և մտածող անհատներից, մեր Յառաջաբանութեան ԺԱ. երեսի համար, հանդերձ ծանօթութեամբ:

Վերջին տողերիս հետ, ահա՛ շտապումենք յայտնելու սիրելի Հայրենակցացս՝ մեր սրտի խորին զգացմամբ ջերմ շնորհակալութիւնները, այն Հայրենասէր և վեհ պարոններին, որոնք անկեղծութեամբ պատուելով թէ մեզ՝ և թէ մեր ձեռնարկը՝ փութացան ստորագրել տալ մեծարգոյ բաժանորդաց՝ սրտի հաճութեամբ ընդու-

(*) Տեսնելով Դաւիթ բէգի Յառաջաբանութեան ԺԱ. երեսը հանդերձ ծանօթութեամբ:

նելով մեր վստահութեամբ ուղարկած յայտարարութեան թերթերը՝ յԱղեքսանդրապօլ՝ Գերապատիւ Սրբազան Աղափիրեանց Գրիգոր Եպիսկոպոս Հօրը, Գերագնիւ Միրական աղա Գօրոյեանցին՝ և Մեծապատիւ Պ. Աւետիք Նալեանցին, յԱխալցխա՝ Մեծապատիւ Պ. Ստեփաննոս Արաբաջեանցին, յԱստրախան՝ Բարեկրօն Յովսէփ Ա. Քահանայ Բունիաթեանցին և Մեծապատիւ Պ. Ստեփաննոս Զանումեանցին, յԱխինջ գիւղն՝ Բարեկրօն Յովակիմ Քահանայ Առաքելեանցին, յԱգուլիս՝ Մեծապատիւ Պ. Ներսէս Միմձօնեանցին, ի Բագու՝ Բարեկրօն Թադէոս Ա. Քահանայ Բուդաղեանցին՝ և Մեծապատիւ Պ. Յաբէթ Տէր Յակոբեանցին, ի Դաւրէժ՝ Մեծապատիւ Պ. Համբարձում Առաքելեանցին, ի Դարբանտ՝ Մեծապատիւ Պ. Համբարձում Աթաբէգեանցին, յԵրևան՝ Մեծապատիւք Պ. Յակոբ Տէր Յովսէփեանցին և Պ. Յովհաննէս Բէգզատեանցին, ի Զակաթալա՝ Մեծապատիւ Պ. Միքայէլ Քոչարեանցին, յԻգդիր գիւղն՝ Մեծապատիւ Պ. Լևոն Տէր Յարութիւնեանցին, ի Կողպ գիւղն՝ Մեծապատիւք Պ. Պօղոս Մելիք Դատայեանցին՝ և Պ. Հուրհերին, ի Գուբայ՝ Մեծապատիւք Պ. Անտօն Մելիք

Դատայեանցին և Պ. Յօնան Տէր Յովսէփեանցին, ի Մօզդօկ՝ Բարեկրօն Թադէոս Ա. Քահանայ Խօսրօվեանցին, ի Մեծ Ղարաքիլիս գիւղն՝ Բարեկրօն Արսէն Քահանայ Տէր Սիմէօնեանցին, ի Նուխի՝ Արժանապատիւ Հայր Վրթանէս Վարդապետ Մուրատեանցին, ի Նախիջևան Հին՝ Արժանապատիւ Հայր Թադէոս Վարդապետ Տէր Դանիէլեանցին, ի Նորք (քաղաքամասն Երևանայ)՝ Մեծապատիւ Պ. Բաղդասար Տէր Յովհաննէսեանցին, ի Նոր Բայազետ՝ Գերազնիւ Բարսեղ աղա Արծրունւոյն, ի Սանկտ Պետերբուրգ՝ Խաչատուր Սարկաւագ Խանթարձեանցին, ի Սաւուխ-Պուլախ՝ Մեծապատիւ Պ. Հեթում Ճէլալեանցին, ի Վան՝ Մեծապատիւ Պ. Նազարէթ Առաւեղեանցին, ի Տփխիս Բարեկրօն Ղազարոս Աւագ Քահանայ Պալըդալֆայեանցին, և Մեծապատիւք Պ. Մարտիրոս Պօղարձեանցին և Պ. Համբարձում Մ. Հ. Բաբաջանեանցին, ի Քանաքեռ գիւղն՝ Բարեկրօն Ներսէս Քահանայ Տէր Մանուէլեանցին։

Բաղդաւոր կհամարիմ զիս եթէ այս մեր Երրորդ ձեռնարկեալ հրատարակութիւնը ևս՝ մեր Հայութեան խմբին, առհասարակ օգտակար և ընդունելի լինի. որով ա-

ւելի ևս քաջալերուելով՝ կըսկսինք լոյս աշխարհ ձգել և հրատարակել, մեր ընդհանուր Հայոց օգտի համար և միւս պիտանացու աշխատութիւնները, որոնց համար ճշմարիտ եռանդով և սրտով՝ հայցումենք ու աղօթում դէպի Ամենաբարձրեալ Էակը՝ որ նոցա քայլերը միշտ ու հանապազ արագութեամբ ընթանան, և դէպի լուսաւորութիւն դիմեն։

Ճշմարիտ Հայութեան զգացմամբ սեղմելով Ազգիս հաւատարիմ Անդամոց ձեռքը՝ մնամ միշտ սիրող և յարգող նոցա

ԱԲԳԱՐ Ս. ԳՈՒԼԱՄԻՐԵԱՆՑ.

Ի 18ն Մարտի 1875 ամի

ԵՐԵՒԱՆ.





**Ի ՍԳԱԼԻ ՄԱՀՆ**

ԱՐՏԱՍՈՒԵԼԻՈՅ ՄՕՐ ԻՒՐՈՅ

# ՀՌԻՓՍԻՄԷԻ

ՅԻՇԱՏԱԿ ՄԱՀԱՐՁԱՆԻ

**ՆՈՒԻՐԷ ԱՐՏԱՍՈՒՕՔ**

*Զայս դոյզն երկասիրութիւն, որդի նորա հարազատ*

ՍՏԵՓԱՆՆՈՍ ՎԱՐԴԱՊԵՏ ՄԽԻԹԱՐԵԱՆ

*Ոչ ի կարծ ընդոստուցեալ եւ ոչ ի լուր զարթուցեալ, այլ եւ ինքնին ի տեղւոջն պատահեցի եւ տեսի:*

Եղիշէ Պատմ. յեղանակ Բ.

## ՅԱՌԱՋԱԲԱՆ

Յաւերժական յիշատակաց արժանի մեծագործութիւնքն Հայկազն վեհափառ Տերանց մերոց և պայազատ Իշխանացն՝ որոց այժմ՝ գրեթէ մեծ մասն մեր առաջին ակնյայտնի կպարպուին և կըբացուին իբրև անշուք և արտասուելի տեսարաններ, երբ կնկատէ մի Հայ՝ որ ունի ոգի ճշմարիտ Հայութեան և անզուգական սէր Հայրենեաց, չկարծեմ՝ անթաց աչօք և անկարեկիր սրտիւ լինի իւր աղէտալի Հայեացքն դէպի այն Նուիրական առարկաններն. վասն զի երբ կմտաբերէ Հայն՝ որ երբեմն այն երկնահանգէտ Աստուածեան Հրաշալի Տաճարներն կպայծառանային գեղեցիկ կարգօք և կանոնիւք, կլուսաւորէին սրբութեամբ, որով և օր քան զօր կբարձրանայր եղջեւր ուղղափառ դաւանութեան Քրիստոնէական սուրբ Հաւատոյ, այժմ շատերն զրկուած այն ամենայն սրբութեան բարեզարդութենէ և դառնալով բնակարան բուոց և ագռաւուց, և որջ աղուեսուց և Նապաստակաց, կտիրէ նոցա վերայ մի միայն դամբանական խորին լռութիւնը։ Երբ կմտաբերէ Հայն արքունաշէն ապարաններն, բազմաթիւ անառիկ և անմատչելի բերդորայքն, որոնք իւրեանց հրաշաճարտար շինուածներովն երբեմն տեսողներն ի հիացումն և ի զարմացումն կկրթէին և ի խրախուութիւն կշարժէին, այժմ մերկացած այն ամենայն շքեղ զարդարանքից, մի միայն անարգանքն է իւրեանց ժառանգութեան բաժինը։ Երբ կմտաբերէ Հայն՝ որ Հայկազեան սիրելի ազգն Եւս երբեմն ըստ այլոց Թագազարդ ականաւոր ազգաց իւր բնիկ Հայրենի ժառանգութեան մէջ տաւաղելով՝ կպերճանայր իշխանական շքով, օրինօք և կարգօք, կզօրանայր զինուորական արիութեամբ, կբարգաւաճէր Աստուածպաշտութեամբ և իշխանական պետութեամբ, և շատ անգամ՝ դիւցազն պայազատներն ազգային սիրով վառուած՝ մինչև իւրեանց կենաց վերջն անհանդուրժելի վշտաց և նեղութեանց ընդդէմ ազգասիրաբար քաջութեամբ զրահաւորելով, և թափելով իւրեանց նուիրական ազնիւ արիւններն, երբէք չէին վհատիլ չէին դադարիլ կրկնել այս հրաշալի փրկաւէտ ձայներն՝ Հայրենիք, Ազգութիւն, Ազատութիւն։ Բայց այժմ դոցա ամենից հակառակն կփոխարինի մեզ. ի՞նչ արդեօք. փոխանակ այն առաջին երջանիկ շքեղ բարեզարդութեանցն՝ վերջին արտասուելի ընդ-

գլխակտրութիւնք, տարագրութիւնք ցանկալի հայրենիքից, ստրկութիւնք դառն ծառայութեանց, մերկութիւնք իշխանական պերճութիւնից, պետութիւնից և ամենայն պանծալի քաջութիւնից, փոխանակ ոսկեայ և արծաթի բազմոցաց և աթոռոց՝ աթոռ նանրութեան, և աթոռ վերջին նախատանաց, փոխանակ թագաւորական Գայխոնի և ծաղկեալ Գաւազանի՝ և ոչ անգամ ջախջախ եղէգն, ապա ուրեմն ո՞ր անգութ և անսիրտ Հայն է արդեօք, որ երբ ներկայօրէն կտեսնէ այս ազգային անդիւտ և անդարձ կորուստներն, չ՚մորմոքիլ սրտաճմլիկ, և սրտի խորքերէն դառն հառաչանաց արձագանքներ չ՚անդրադարձնել. և ի՞նչ էր արդեօք այս ամենայն աղետից և թշուառութեանց բուն պատճառն. ո՞չ ապաքէն խաւարասէր տգիտութիւնն և փոխառու հակառակասէր բարքն, որ գրեթէ առհասարակ տարրացած էր մեր ազգին մէջ.

Չէ պարծանք այժմուս՝ այլ յետին նախատինք է այն Հայուն, որ չ՚հասկանալով իւր ազգութեան սեփհական պարտիքներն՝ մինչև անգամ իբրև մի օտարազգի Հայ և Հայաստան անուններն աշխարհայրութեան մէջ որոնելով գտնել կցանկայ. այլ գոհութեան և գովութեան արժանաւոր իսկ է այն Հայն՝ որ տեսնելով հայրենեաց մէկ աղէտն, կփութայ կարելւոյն չափ սփոփել զայն՝ տեսնելով հայրենեաց փառաւորութիւնը, կփութայ խառնել նորա հետ նաև իւր սրտի խինդն.

Հա՜յ եղբարք, դարն ուշ կ՚ծնանի մեզ համար այլ ևս քաջազուն հաստարազուկ Նահապետն Հայկ, որ ճշմարիտ Աստուածապաշտութեան և իւր որդւոց սիրոյ և ազատութեան համար վեհանձնական արիութեամբ պատերազմելով թաւալգլոր կործանեց գոռոզացեալ աստուածամարտ Տիտանեան Բէլ.

Ուշ կծնանի դարն մեզ համար այլևս հայրենասէր Արամ, որ իւր բնական քաջութեամբն և խոհեմութեամբն Հայաստանի ոխերիմ թշնամեաց մին բարձր աշտարակի ծայր հանելով՝ նորա գործած անիրաւութեանց փոխարէնը երկաթի ցցով ճակատէն գամել, մին սպանանել և մին հալածական առնելով Միջերկրական կղզիներու մէկի մէջն փախցնել, Կապադովկիոյ երկրի վայրենի բնակչաց մէջն Հայ լեզուն տարածել, միով բանիւ լաւ համարել հայրենեաց վերայ սիրով մեռանել՝ քան թէ տեսանել յայտնապէս օտարածնաց անհարազատ որդիքը կոխել հարազատ հայրենի սահմանը.

Ուշ կծնանի դարն մեզ համար այլ ևս Երուանդեան քաջարի մեծն Տիգրան, որ էր իսկապէս պարծանք և միանգամայն պայծառացուցիչ Հայկազեանս Թագաւորութեան, որոյ հայկական անպարտելի բազկաց ահացուցիչ կորովութիւնը Հայաստանի դաւաճան թըշնամին երազի մէջ սարսափեցնելով խռովեցնել և յայտնապէս իրօք սատակեցնել.

Ուշ կծնանի դարն մեզ համար այլ ևս Մամիկոնեան քաջարին Վարդան, որ էր բարերար և մեծ խնամակալ Հայաստան աշխարհի, որ իւր քաջակորով ազատագունդ զօրաց հետ արիւնաներկ սուսերն նետ ու աղեղներն ձեռքերին առած իբրև արծիւ դէպի Աւարայր դէպի Արտազ սլանալով՝ առիւծաբար արձակուելով Պարսից սևացեալ գնդին վերայ՝ կրօնից և հայրենեաց ազատութեան փրկութեան վարդակարմիր դրօշն կանգնեցոյց Հայաստանի մէջ.

Ուշ կծնանի դարն մեզ համար այլ ևս այն դիւցազն պայազատ սեպուհներն՝ որոնք իւրեանց քաջագործ արիութեամբն և պանծալի գործոց յիշատակներով անջնջելի դրոշմած են Հայոց ազգի սրտի վերայ. Նոքա Հայոց ազգի և հայրենեաց համար իրաւի առաւօտեան արուսեակ էին, լուսապայծառ աստեղունք էին, անցին գնացին յաւիտենական անդարձութեան մէջ հանգչեցան. մխիթարուինք այժմ մի միայն Նոցա վսեմապանծ գործքերովն, Նոցա յիշատակաց աւերակաց գերբուկներովն, որոնք իբրև ծաղիկ գարնայնոյ դեռ կբուրեն իւրեանց ցանկալի անուշահոտութիւնքն, թէպէտ և հնութեամբ թառամեցած՝ սակայն իբրև նորափթիթ վերընծայելով՝ քաջալերութեան կաւետն մեզ հանապազ անվհատելի յոյսեր. բայց այժմ կա՞ն արդեօք Նոցա նման Հայաստանի համար մեծազօր խնամակալներ, հայրենասէր և ազգասէր բարերարներ, ու՞ր են դոքա. Թող ելնեն ի հանդէս, և Նախնեաց գեղեցիկ վաստակներն և մեծագործութիւններն իւրեանց անձանց վերայ կենսացուցանելով՝ Նոցա մահուան հողից անդրէն առ կենդանութիւն յարութեան թող փոխադրեսցին. Թէպէտ և ազգութեան արդի վիճակին նայելով՝ ոչ ոք է որ ուրանայ զայս իրական ճշմարտութիւնը. որ իրաւի կորուսած ենք մեր քաղաքական անկախ իրաւունքներն, բայց և այնպէս կհաստատանիմք պարծանօք՝ որ ունինք մինչև ցայսօր այնպիսի մի Հոգևոր ծայրագոյն Իշխանութիւն՝ որն մեզ համար սուրբ է, նուիրական է և միանգամայն Աստուածային առանձնաշնորհութիւն. եթէ այժմ Հայ անունը աշխար-

հիւ մէջ պարծանօք կ՚յիշենք, նորանով է. իսկ եթէ հին ազգ լի-
նելներուս համար կպարծինք՝ մեր պարծանաց աներկեան յայտնի
վկայքն մեր նախնի վեհափառ Տերանց և դիւցազն պայազատաց
հնաշխարհիկ պանծալի գործքերն են, բազմաթիւ հոյակապ մենաս-
տաններն են, հրաշափառ Աստուածային տաճարներն են, անթիւ և
անհամար փառահեղ շէնքերն են, որոց համար թէև Հայոց ազգը՝
ո՜հ ցաւօք սրտի կ՚յիշեմ՛, մեծաւ մասամբ անհոգ և անտարբեր մնա-
ցած է, թէպէտ օտարների սաստկաշունչ փոշիներն օր քան զօր
բարդուելով դիզուելով կջանան իսպառ ծածկել մեր աչաց տեսու-
թիւնից, սակայն կուգայ մի ցանկալի օր, որ ազգը իւր սուրբ հնու-
թեանց արժէքը ճանաչելով՝ մի մեծազօր հրաշագործ ձեռք, դարա-
ւոր ժամանակաւ փոշով ծածկուած այն աննշան կարծուած քարե-
րըն անգամ՝ ադամանդի վերածել, և նոցա ողբերն սրբելով յուկե-
փայլութիւն վերստին հասցնել։ Թէպէտ և մեր ազգութեան պար-
ծանաց բազմաւոր ծառն այժմ անպտուղ տերևաթափ կանգնենք,
սակայն արմատն դալար և խորագնաց լինելով՝ բունը գեր հաստա-
տուն է. կուգայ մի գեղեցիկ ժամանակ, կուգայ մի նուիրական օր, որ
գթած Անեղին մարդասէր աչաց քաղցր հայեցողութեամբն առ ազգս
մեր և նորա անքուն նախախնամութեան արեգական ջերմ՝ ճառա-
գայթներովն ամենագեղեցիկ ծաղիկներով վերստին փթթելու է այն
պարծանաց իշխանական ծառը, ուռճանալու է բազմաբեղուն քաղցր
պտուղներով. Հայն այնուհետև Եբրայեցւոց ազգին նման տարաշ-
խարհիկ պանդխտութեամբ Բաբելոնական գետերի մօտ չէ նստելու և
ոչ լալով յիշելու անուշ զՀայաստան, այլ բուն հայրենիքին մէջ
նստելով զգուելու է զՀայ եղբայրն, սիրելու է ցանկալի մայր Հայաս-
տանը. Հայն օտար հողով աճեցած ուռենեաց մէջ երբէք չէ կախելու
իւր սրբութեան Կտակարանը և ոչ իւր սիրոյ գոհաբանական օրհ-
նութիւնն օտար երկրի մէջ նուագելու, այլ այնուհետև Հայը սիրե-
լով իւր ազգութիւնը, հայրենիքը իւր անձն և . . . թշնամիներն ար-
տահալած անելով՝ ապա ինքն եւս հպատակելով ազգութեան սիրոյ
միութեան դրօշին՝ կկախէ իւր սրբութեան կտակարանը հայրենեաց
հողով աճեցած ծառէն, կնուագէ սիրոյ օրհնութիւնն իւր բնիկ
հայրենիքին մէջ, և սկիզբն իւր կատարեալ ուրախութեան՛ը անմո-
ռանալի սիրով կ՚յիշէ ի մօտոյ նախապէս ցանկալի Հայաստանը, և
քաղցրահնչիւն քնարի թելերովն և սրտառուչ նուագներովն կերգէ-

գեղէ նորա փառելի անունը, և թանկագին մարգարիտներով Հայաստանի համար յաւերժական փառաց պսակներ կյօրինէ. ո՜հ իցէր արդեօք և ամենեցունցս հանդիպել այն ցանկալի երջանիկ աւուրն։

Ասացէք կաղաչեմ, արդեօք մարդիկ առհասարակ աշխարհիս մէջ ի՞նչ բանով այնքան պատկառելի զգալի կարող են լինել և միանգամայն բարերար հանդիսանալ թէ յատկապէս իւրեանց ազգայնոց և թէ ընդհանրապէս մարդկութեանը և զնոսա բարւոք քաղաքակրթութեան հասցնել. ոչ այլ ինչով, եթէ ոչ իւրեանց չքնաղ պանծալի մեծագործութիւններովն, նորանոր հանճարաւոր գիւտերով, զանազան արհեստներով, զորս կշնորհէ մարդոյս բանական անմահ հոգին և Աստուածաձիր հանճարը, որոյ զօրութեան և ներգործութեան ճարտարութեամբն քննելով բնութեան մէջ եղած զանազան գաղտնիքներն՝ այնուհետև մեծամեծ օգուտներ կընծայեն ազգութեանը և մարդկութեանը, և ահա այսօրինակ անմահ բարերարութիւններն՝ զորս տեսնելով մարդիկ՝ սիրայօրդոր ըստ ինքեանց կլինին և նոցա արժանայիշատակ գործքերը ազգութեան և մարդկութեան մտաց մէջ դարաւոր ժամանակաւ անմոռանալի յաւերժականութեամբ անմահացնելու դիտմամբ ի գիր արձանագրուցանելով ի լոյս ընծայել, նախ իբրև երախտագիտութիւն նոցա բազմագինի բարերարութեանցն, և երկրորդ նմանիլ նոցա գովելի գործոցն և նպատակացն, որոց և գեղեցիկ շաւղացն հետևելով և իմ՝ ձեռնամուխ եղէ այս փոքրիկ երկասիրութեանս (որոյ մէջն կնկատուին արժանայիշատակ չքնաղ մեծագործութիւնք, կրօնից և աստուածպաշտութեան սիրալի հանդէս նախնի վեհափառ Տերանց մերոց, որոց երանելի կեանքերն, անմահ անուններն թուահամարաւ կտեսնուի ի վերջընթեր գրքուկիս պատմական ծանօթութեան մէջ), ոչ թէ այնու դիտմամբ՝ այն չքնաղ անձանց դասակարգն համաթուիլ կամ մասնակցիլ նոցա յատկացեալ փառացն և արժանաւոր գովասանացն. ոչ երբէք. այլ եթէ Հայաստան աշխարհի փոշիացեալ հնութեանց տաճարին վերանորոգութեան ներկայ կամ ապագայ յոյս մի կայ, ես այժմէն իսկ այն վերանորոգութեան նուիրական Տաճարին փոքրիկ բեկոր մի նուիրած լինիմ, յուսալով որ՝ մեր Հայ եղբարք սիրով կընդունին այս իմ անակնկալ ծառայութիւնը։

ՍՏԵՓԱՆՆՈՍ ՎԱՐԴԱՊԵՏ ՄԽԻԹԱՐԵԱՆՑ.

## ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆ ԱՅՐԻ ՎԱՆԻՑ

## ՍՐԲՈՑՆ ԳԵՂԱՐԴԱՑ

---

Մեծահռչակ Մենաստանն Այրի 1) Վանից Սրբոյն Գեղարդայ 2)՝ որ մեր նախնի վեհափառ Տերանց և պայազատ իշխանաց հռչակի մեծագործութեանց մէկն է, իւրեան գեղեցկաշուք և գեղեցկատիպ վիմարդեան կրամած շինուածովն՝ իրաւի՛ ջերմեռանդ և մեծահաւատ հայրենասիրաց ակնախտիղ կհանդիսանայ, կառուցուած է Գառնոյ 3) երբեմն գիւղաքաղաքի արեւելեան հիւսիսային ձորամիջին մի և կէս ժամ հեռաւորութեամբ Գառնիէն. ինչպէս տաժանակիր աշխատութիւնից կհասկացուին՝ բակիզքն Մենաստանի տեղն եղել է խիստ դարուփոս և անյարմար, բայց երբեմն ապառաժների խրթին թանձրութիւններն հարթելով, երբեմն դարուփոսներն լցնելով ու կրաշաղաղ բարձրացնելով հաւասարած են գետինը, որ այժմ հարթայատակ և վայելուչ կերևի. շրջապատուած է սեպացեալ բարձրաբերձ լեռներով, քարաժայռերի գլխներն կարծես թէ բնութիւնն իւր ամենիմաստ գիտութեամբն դիտմամբ զարդարել է հիաքանչ ճարտարարուեստ բուրգերով, կարակնակերտ աշտարակներով ու սրածայր կոթողներով, որոց առաջին՝ մարդկային հնարակերտած Եգիպտական բուրգերն, կոթողներն և այլ շէնքերն, որոնք անհամար ժրաջան արհեստաւորաց ձեռքերով դարաւոր

ժամանակեայ անդադար աշխատութեամբ հազիւ գլուխ եկած են, և հաստատութեան ու տևողականութեան մասին յաւիտենականութեան կարգն անցած զերենք կըկարծէին, այո՛ իւրեանց խրոխտապանծ բարձրայօն գոռոզութիւններն նուաստացուցած խոնարհացնելու են։ Մենաստանի հարաւային կողման պարսպի տակից կանցնի եղեմարուղխ Եղատ 4) գետն, որ մերձակայ և հեռաւոր լերանց ձիւնապատ գագաթների գոգաւոր անդերի և դարանակալ խորշերի հասանուտ երակներից բղխելով՝ այն բարձրաբերձ գագաթների նեղ նեղ ջրանցքների միջից խոխոջանաց ձայներ հանելով՝ կիջնի զառ ի վայր լերանց ստորոտը, որոց և խառնուելով բազմակնեան ականակիտ վտակաց և աղբերց քաղցրահամ ջրերին, կձևանայ սոյն կարկաջահոս գետն, և գեղածիծաղ յաւէտ յառաջ խաղալով կենդանական սնունդ կպարգևէ արգաւանդաբեր անդաստաններին. այս գետից նաև դուրս կուգայ առատօրէն ‘‘Կարմրախայտ,, ազնիւ ձուկն. իսկ տեղւոյս օդն է յոյժ առողջասուն, կենդանապարգև և զովարար. նմանապէս գարնան ժամանակը շատ զուարճալի է տեղւոյ բարեվայելուչ դրութիւնը, ըստ որում դէմ յանդիման խորաձորին ապառաժների և քարաժայռերի երեսներն կտեսնէք լցուած սաղարթազուարճ պտղատու և անպտուղ ծառերով միմեանց գրկախառնած, թէև ծառերն անառուեստ են, սակայն խիստ սիրալի են և աչաց հայելոյ յոյժ հաճոյական. նա մանաւանդ, երբ գիշերային պահը կսկսի բաժանուիլ և կծագէ լուսափայլ առաւօտը ու քաղցրասիւգ հովը կշնչէ իւր անուշահոտութիւնը, թռչնոց երամքն յափշտակուած բնութեան այս անմահական պարգևաբաշխութիւնից, ծառերի ոստոց վերայ բազմած կըսկսին միմեանց հետ ներդաշնակութեամբ մանկել ի պարեր-

գութիւն և ի հրաշալի նուագ սիրալիր, կարծես թէ քաղցրր մեղեդեաց և երաժշտական պէսպէս ձայներով նոր օրհնութիւն կեղանակեն Ամենակալ Արարչապետին, որով արդարև բաւական իսկ է տարագիր եղած մարդոյ փարատել իւր ամենայն սուգն և տրտմութիւնն։ Արդ՝ այժմ մեր խօսքերն կարելի իմն խորին պատկառանօք ուղղենք դէպի Տէրունեան Տաճարն, որ է տեղի սրբութեան անաղօտ փառաց Աստուածութեան, դէպի Տէրունեան Տաճարն ասեմ՝ որով այս մեր նախնի պայազատ իշխանաց Աստուածահաճոյ առաքինութեանց սխրագործ հանդիսի պանծալի յիշատակներն դարուց ի դարս խնկելի օրհներգութեամբ կ՚քարոզեն յաւիտեան, և որոց ցանկալի անուններն այժմէն իսկ կգտնուին երկնային յիշատակարանաց մէջ անեղծանելի դրոշմած։

## ՎԱՆՔ ՍՐԲՈՑՆ ԳԵՂԱՐԴԱՑ·

Արդ, ինչպէս ի վեր անդր յիշատակեցինք, Գեղարդայ մեծահռչակ մենաստանի շինութիւնն է յոյժ չքնաղակերտ և հոյակապ, և ըստ ամենայնի նշանաւոր նորաձեւոյ տաճարաց, որոց շարադասութեանց մէջ անխերև կենդանի արհեստի ճարտարութիւնը. կառուցած է սա՝ խաչաձև, առանց սիւների, միայն չորս միանման և միակցուրդ որմնասիւներով, ամեն մի որմնասիւնը եռակարգ հատուածաձև իբր բաժանած, միջին կարգինը աւելի բարակ ենուրը, իսկ երկուքը յար ենման միմեանց. վերին և ներքին խարիսխներն քառանկիւնաձև են, բայց անդրուագ. սորա վերայ ձգած է բոլորակ կամարներ և բարձրացուցած է փառաւոր սրածայր Կաթուղիկէն, որ ունի ու-

թըն նեղ և երկայնաձիգ լուսամուտներ. իսկ Տաճարն ունի վեց լուսամուտներ, երկուքն արևելեան կողմն միմեանց կից՝ որտեղ է և աւագ խորանն, երկուքն արևմուտքը, որոնք կրացուին ընդարձակ Ժամատան մէջ՝ մին հիւսիս, և մինն հարաւ, և բացի հարաւային լուսամուտէն՝ որ է մեծադէր և քառանկիւն՝ միացեալներն են նեղ և երկայնաձիգ. ունի երկու դռներ, մին կրացուի դէպի արևմուտք, ընդարձակ Ժամատան մէջ, և մին հարաւ դէպի դուրս: Տաճարի միջին տեսքը գրեթէ առանց քանդակագործութեան է. բացի աւագ խորանէն, կան յաջմէ և յահեկէ երկու կամարայարկ խորաններ ևս, որոց դռներն դէմ առ դէմ կրացուին աւագ խորանի բեմի վերայ և չորս աստիճան սանդղով կբարձրացուի բեմի վերայից նոցա մէջ. նոցա ներքնայարկերն երկու աւանդատներն են, ունին իւրաքանչիւրն մէն մի փոքրիկ լուսամուտ, արևելեան կողմն դէպի դուրս, և ներքնայարկ աւանդատների դռներն կրացուին դէպ արևմուտք՝ Տաճարի մէջն: Աւագ խորանի կիսաբոլոր որման վերայ կան երկոտասան ծաղկենկար քանդակագործութեամբ կամարաձիգ և սիւնազարդ շըրջանակներ, որոց մէջն՝ ինչպէս կերևի՝ երանելիքն ցանկացել են առաքելոց պատկերներ քանդակագործել կամ նկարել, և նոցա վերայից դարձեալ գեղեցկաքանդակ կամար է բոլորած. յար և նման նոցա ձևակերպութեանցն է բեմի ճակատն, և սալայատակից մինչև բեմն հինգ աստիճան սանդղով կելանեն: Յետի դասու յաջմէ և յահեկէ կան դարձեալ երկու կրկնայարկ խորաններ. դէպի վերնայարկ խորաններն կբարձրացուին վեց աստիճան որմնամած սանդղով, զոր Տաճարի ամայութեան ժամանակը անօրէն Պարսիկք կիսով չափ կոտրել են. նոցա դռներն միմեանց հանդէպ կրացուին՝ Տաճարի մէջն. ձախակող-

մեան կրկնայարկ խորանաց փոքրիկ լուսամուտներն կբացուին հարաւ դուրսն. իսկ յաջակողմեան վերնայարկինը հիւսիս դէպի դուրս, և ներքնայարկինը դէպ արևելք Տաճարի մէջն. հիւսիսային որման մէջ՝ սրբանուէր աւազանի տեղն միայն է յատկացուցած, բայց ոչ վիմափորած, ուր հնար լինի կատարել Մկրտութեան սրբազան խորհուրդն։ Տաճարի միջին բարձրութիւնը սկսեալ սրածայր կաթուղիկէի բուն միջակետիցն՝ ուր է հրաշաքանդակ պատկեր Հօր Աստուծոյ, մինչև ցյատակն եկեղեցւոյն է երեսուն և ինն կանգուն. երկարութիւնն՝ Աւագ խորանի բեմի առաջէն ցարևմտեան դուռն՝ որ կբացուի ընդարձակ Ժամատան մէջ, է տասն քայլ, իսկ լայնութիւնն՝ հիւսիսէն մինչև հարաւ՝ է տասն և մի քայլ. նմանապէս կրկնայարկ խորաններն հաւասարաչափ մեծութեամբ ունին երկու քայլ լայնութիւն, երեք քայլ երկայնութիւն և չորս կանգուն բարձրութիւն։

ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ ՏԱՃԱՐԻՆ Ի ՆԵՐՔՈՒՍՏ.

Աւագ խորանի հիւսիսային որման վերայ։

“Շնորհիւն Աստուծոյ, ես Պռօշ 5) իշ-
“խան որդի Վասակայ 6) յազգէն Խաղբա-
“կայ գանձագին արարի ի տերանց աշ-
“խարհիս սուրբ ուխտս Այրի վանից լե-
“րամբք և դաշտաւք և ամենայն կազմու-
“թեամբ որ կայր ի սմա . . . . . .
“ոսկի և արծաթ խաչ և պահարանս, սր-
“կիհք բուրվարք և քշոցաւք շինեցի եկե-

“զեցիս և կանգնեցի սուրբ նշանքս և յար-
“մարեցի գերեզմանատուն ինձ և ազգի
“իմոյ յաւիտեան և տուի ի սպասաւորու-
“թիւն սրբոցս այս հալալ գանձագին գե-
“ղըն Զոզջաբեր զՄերդաղն և ՃՌ սպ·
“այլ եթէ յիմոց ազգէ կամ յաւտարաց *)
“զիմ ոսկով գնած հայրենիքս ի այս սրբո-
“ցըս հանել ջանայ զինչ և իցէ պատճա-
“ռաւք զիմ անդարձս այլոց եա դարձանէ
“հանեալ լիցի այնպիսին յատենէն Աս-
“տուծոյ և որոշեսցի յարդարութենէ սուրբ
“հաւատոյս և առցէ զբաժին Յուդայի · ·
“· ադ · · · ի վանից այս բանքս անջինջ
“արձանագրելի որ խոստացան Զատկին
“պատարագ և տարին անխափան կատա-
“րեն գյիշատակ մեծ պարոն Պռոշի զար-
“մից և զաւակաց նորա յաւիտեան ի Թ·
“ՉԼԲ„։

Վերին արձանագրութեան ներքեւն։

“Կամաւն Աստուծոյ ես տղայ Գրիգոր 7)
“որդի · · · · · · Վախթանկայ միաբա-

(*) Նոտողանիշ բառից ցվերջ պարբերութեան՝ որ է հայկական տարեթիւն, իբրև առանձին հատուած փորագրած է յաջակողմեան վերնայարկ խորանի գրան ճակատին, ինչպէս տառերի ձևակերպութիւնը կհաստատէ նորա իսկական հատուած լինելը։

“Նեցայ սուրբ ուխտիս Ա.յրի վանից . . . .
. . և սպասաւորք սորա խոստացան Ա.
“ քառասունք . . . . Գրիգորին . . . տէր
“ տուրկան . . . . կամ խափանէ ,, ։

Առաջ խորանի հարաւային որման վերայ։

“Կամաւն Աստուծոյ ես Հասան 8) որ-
“դի Վախթանկայ 9) Թոռն մեծին Սմբա-
“տայ Թագաւորազին միաբանեցայ սուրբ
“ուխտիս և ետու պատուական աւետարան
“ յաւիտենական և Սպասաւորք սորա խոս-
“տացան ի տարին ժամաւք Պատարագ
“աւագ Զատկին. Ն. ինձ. Գ. իմ մաւրն
“Խանային. Բ. Բուզ.քանայ կենակցոյն ի-
“մոյ որ խափանէ ՅԺԸ. Հայրապետաց Նը-
“զովեալ,, ։

Աջակողմեան աւանդատան դրան ճակատի վերայ։

“Ես Ասխաթան շինեցի զխորանս և
“սպասաւորք սորա խոստացան ի տարոջն
“Գ. աւր ժամ, աւր Ա. ինձ, և աւր Ա. իմ
“ծնողացն, աւր Ա. յեամկանն և մի' ոք իշ-
“խեսցէ խափանել,, ։

Այց վերնոյն խաչէրի վերևն։

“Քրիստոս ողորմեա Կարապետին Գր-
“րիգորին և ծնողացն և եղբարցն ամէն,, ։

Խաչքրէ Ներքևն։

"Կամաւն Աստուծոյ ես Գոհարս . . .
"դուստր պարոն Սարգսի Մեծ և ան-
"ձանց ետու. Կ. դաՀեկան և Սպասաւորք
"սորա խոստացան ի տարին Գ. աւր
"ժամ,,։

Ձէռախայէն որման վերայ մօտ Նաւղանէն։

"Կամաւն Աստուծոյ ես Գրիգոր յա-
"ջորդութեան Զաքարիայի միայնա-
"ւորի ետու Յ. դաՀեկան ի սուրբ Կա-
"թուղիկէս և սպասաւորք ցանկացան տա-
"րին Բ. ժամ որ ստացայ երիս խորանս
"սուրբ . . . . . պս . . : Աստուած ողոր-
"մի Գրիգորին և ծնողացն ամէն,,։

Յետէ տասն յաջակողմեան վերնայարկ խորանէ հարաւային
որման վերայ։

"Ես Գրիգոր և Լուսխոս տուաք ի
"սուրբ Կաթուղիկէս ՃՌԻ. դաՀեկան և
"շինեցաք զխորանս զայս և Սպասաւորք
"սորա խոստացան մեզ ի տարոջն Զ. աւր
"ժամ. Ա. Գրիգորին. Ա. ՎաՀրամին և Ա.
"Գիգովին,,։

Նոյն ոճով վերայ վերին արձանագրութեան փոքր ինչ ներքեւն։

"Կամաւն *) Աստուծոյ ես Մ՛ամքա մի-
"աբանեցայ սուրբ ուխտիս ետու Ի. դա-
"հեկան և խոստացան Բ. աւր ժամ Ա. ինձ
"Ա. իմ որդւոյ և հաւր Պողին,,։

Զախակողմեան աւանդատան դրան ճակատի վերեւն։

"Կամաւն Աստուծոյ ես Աւոմ և ա-
"մուսին իմ Արքայ միաբանեցաք սուրբ
"ուխտի Այրի վանս և տուաք ընծայ զիմ
"տունն որ յԵրևանէ և Սպասաւորք սորա
"խոստացան ի տարին Օ. աւր ժամ. Գ.
"Աւոմայ Գ. Արքային,,։

Փոքր ինչ ներքեւ միւսէ դրան ճակատն։

"Կամաւն Աստուծոյ ես Ոմեկս ետու
"Կ. դահեկան ի սուրբ ա. . է տվի որ
"Նորոգեցին Այրի վանաց համար Խ. ի
"Վ՝անքս Սպասաւորքս խոստացան ի տա-
"րոջն Լ: աւր ժամ Ա. Ոսկեհատին և Գ.
"ինձ. կատարիչ.ք Վ՝արդաշինեցի զմի խո-
"րանն և գհնձանն որ է մերձ իւրեանցս և
"զԿողձնուտի այգին և տվի սուրբ. ուխտս

(*) Սորա վերևի մի արձանագրին իսպառ եղծուած լինելով՝ կարդալն ինձանից անհնարաւոր եղաւ։

“և բնակիչք սորա եդուն ի տարոջն Ը.
“աւր ժամ. Օ. աւրն ինձ Ա. իմ հաւրն
“Ստեփաննոսին Ա. Նասխաթունին ա-
“մուսնոյն իմոյ որ խափանէ զժամքս դա-
“տի ի Քրիստոսէ,,:

“Ես Մխիթար տվի Ի. դահեկան և
“սպասաւորք սորա խոստացան ի տարին
“Ա. աւրն ժամ ի սուրբ Սարգսի տաւնին
“որ խափանէ դատի ի Քրիստոսէ,,:

“Ես Վահրամս որ շինեցի զխորանս և
“սպասաւորք սորա խոստացան ի տարոջն
“Գ. աւր ժամ, Ա. աւր Վահրամայ և աւր
“մի իմ ծնողաց և մի աւր Ուզուքանայ
“մի՛ ոք իշխեսցէ խափանել,,:

Հարաւային որման վերայ գրեալ է ձախակողմն դրան:

“Ես Մխիթարս եդու Զ. դահեկան
“և սահմանեցին ի տարոջն Գ. աւր ժամ,
“Բ. աւր ինձ Ա. աւր Թուրանին Ա. աւր
“Գոհարինոս,,:

Նոյն դրան գրեալ է յաջակողմն:

“Ես Ուսլունս միաբանեցայ Սուրբ ուխ-
“տիս եդու Զ. դահեկան և թափեցի ըզ-
“Գառնոյ խոպանն յիշատակ ինձ և ծնո-
“ղաց իմոց ով հանէ յեկեղեցոյս դատի

"յԱստուծոյ և սպասաւորք սորա խոստա-
"ցան ի տարին Դ. աւր ժամ, Ա. ինձ, Ա.
"Խաչատրոյ, Ա. Ամիտոնն Ա. Վահրամին,,։

Յետոյ դրան— յախախողման վերնայարկ խորանի հիւսիսային որման վերայ։

"Ես Սուքայս որդի Յովհաննիսի ետու
"Ի. դահեկան և Սպասաւորք սորա խոս-
"տացան ի տարոջն Ա. աւր ժամ որ խա-
"փանէ դատի ի Քրիստոսէ, ամէն ժամն
"Յովհաննիսի Աւագ Ն. շաբաթի աւրն
"կամաւն Աստուծոյ ես Վարդ երէց որդի
"աւագ Ներիցոյն շինեցի զխորանս ար-
"դեամբք իմով և Սպասաւորքս սորա խոս-
"տացան ի տարին Դ. աւր ժամ Ճրա-
"գալուցին. Դ. աւր ինձ, Ա. իմ հաւրն որ
"ոք խափանէ . . .,,։

ԱՐՏԱՔԻՆ ՏԵՍՔ ՎԱՆՈՒՑ ԳԵՂԱՐԴԱՅ.

Հոյակապ Տաճարս՝ զոր կառուցած են բովանդակ յղկեալ կարմիր քարից, իւր արտաքին դրութեան մէջն երևելապէս է՝ խաչաձև, յոյժ գեղեցիկ և չքնաղակերտ, մանաւանդ փառահեղ Կաթուղիկէն, որոյ բոլորաձև լայնանիստ շրջապատն մինչև վերին կամարն, որ անդից կլոր-կլոր բոլորշի ուրածայր գմբէթն, շքեղազարդած է շղթայաձև ծաղկենկար քանդակագործ գօտիներով ևս և վեշտասան անկիւնաւոր կամարաձևից և սիւնազարդ շրջանակ-

ներով, որոց ութիցն միայն՝ մէջ առ մէջ կբացուին նեղ և երկայնաձիգ լուսամուտներ, բայց այդ շրջանակների կամարաց և լուսամուտից գլխներին և թէ անկիւնների մէջն կտեսնուին զանազան արհեստական հիանալի քանդակներ, զոր օրինակ՝ մարդոյ գլուխ, աստղանիշ և շուշանաձև ծաղիկներ, վարդեր, ողկոյզներ խաղողոյ, սաւառնաթև արծուի մագիլներովն բարձրացուցած մի գառն, թռչունք, նապաստակ, եզան գլուխ ևլն. Նմանապէս Կաթուղիկէի երկաթի խաչի պատուանդանի չորս կողմն գեղեցիկ պատկերներով քանդակագործած է, զոր օրինակ՝ արևելեան հիւսիսային կողմերն մարդկան երկու պատկերներ են կիսով չափ, հարաւայինը քառաթև հրեշտակ, իսկ արևմտեանը՝ երկգլխեան սաւառնաթև արծուի, և կողմնական խաչաձև թևերի իւրաքանչիւրոց ծայրին կան փոքրիկ զանգակատան նման քանդակած քարեր՝ գլխներին երկաթի խաչեր։ Սոյն այս հրաշափառ Տաճարս՝ որոյ միջին տեսքը ստորագրած ժամանակս յիշած եմք, ունի երկու դռներ, մին դէպ արևմուտք ի ներքուստ՝ որ կբացուի ընդարձակ Ժամատան մէջ, և մին հարաւ դէպի դուրըս. Հարաւային դրան արտաքին տեսքը գեղեցիկ քանդակագործութեամբ դրուագած են միմեանց վերայ եկած սիւնազարդ կամարներով, մանաւանդ բուն ճակատը, որոյ վերայ հիանալի արուեստակերտութեամբ քանդակած են հինգ հատ սաղարթազեղ խաղողոյ որթեր, որոց և իբրու պատուաստած լինելով նռնենիք, երկոցունց հասունացած քաղցրաճաշակ ազնիւ պտուղներն տերևազարդ ճիւղերից զոյգ զոյգ կախուած՝ զերենք խիստ հաճոյական կընծայեն տեսողներին, և որովհետև այժմ դըրան գլխին փոխանակ զանգակատան շինած է երկաթի թիթեղից կիսաբոլոր ծածկոյթ, ուստի խաղողոյ որթերն

կճեան ծածկութի ներքոյ, զորս նորա տակէն միայն կարելի է տեսնել. բայց դրան վերին քառանկիւնաւոր քանդակագործ շրջանակի մէջին կողմն՝ ուր տեղ է արձանագիր յիշատակի, յաջ և յահեակ կան երկու կոցար թռչուններ՝ մէկի գլուխն կտրած, և սորա բարձրն է հարաւային քառանկիւնաւոր մեծ լուսամուտն, որոյ յահեակ կողմն կան մի հատ մարմարոնեայ փոքրիկ խաչ անթուական արձանագրութեամբ և մի հատ արեւու քանդակագործ ժամացոյց. իսկ լուսամտի գլխին կան երկու հատ ահարկու սոսկալի առիւծ և ցուլ կենդանիններն, առիւծը իւր զօրեղ ձեռքերն ցլու ուսոց և մէջքին վերայ դրած՝ խորտակել կսպառնայ, իսկ ցուլն իւր սրածայր եղջիւրներն անցուցած առիւծոյ փորոյ տակն շրջել կըջանայ. ինչպէս հարաւային որման մէջ յաջ և յահեակ դրանը, նըմանապէս արեւելեան որման մէջ կան երկու երկու բարձրադիր ծոցացած սիւնաձև խորշեր գրեթէ փոքր ինչ անհաւասար որմոց բարձրութեանցն. գլխներն գեղեցիկ ծաղկենկար ախաւեղապէս *) կամարներով. նմանապէս Տաճարի բոլոր որմոց վերին եզերքն մանրածաղիկ նկարներով զարդարած են։

ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ ՏԱՃԱՐԻՆ ԱՐՏԱՔՈՒՍՏ.

Հարաւային դրան երկարի ընէնեղէց ծածկարի վերին կամարի մէջ։

“Կամաւն Աստուծոյ ես մի Թորոս մի-
“աբանեցայ սուրբ ուխտիս տվի Ճ. դա-
“հեկան խոստացան Ն. աւր ժամ,,։

---

(*) Սաչաղ.

Նոյն դրան քառանկիւնաւոր շրջանակի մէջ՝ որտեղ էն Ըլլա-նոյ պատկերը:

"Կամաւն Աստուծոյ ես Սուլէ որդի
"Թաղայի յազգէն Չիթաղեանց 10) քաղ-
"քէն Թիֆլիսու նորոգեցի զկաթուղիկէս
"յիշատակ ինձ և Թաղային և Բէկի Սուլ-
"դանին և ամուսնոյն իմոյ Դարեջանին և
"որդւոյն իմոյ Ստեփաննոսին եղբարցն ի-
"մոց Զալէին և Զաւրապին և ամուսնոյն
"իմոյ Գինաղն և որդւոյ Թաղայի և հան-
"գուցելոցն ի Քրիստոս Պապքան և կա-
"խեցի արծաթէ կանթեղս սուրբ Գեղար-
"դին և ետու զխարճ նորա հանապազ
"վառ պահեցեն. Թվ. ՌՃԴ":

Այս արձանագրութեան վերևն:

"Ողորմի ամենազօրին Աստուծոյ եր-
"րորդ անգամ նորոգեցան տանիքս Այրի
"վանիցս սուրբ Գեղարդայ հանդերձ եր-
"կոքումբք գմբէթիւք որոք Լուսաւորչա-
"կան Հայոց ժողովրդականաց և բազմա-
"ջան աշխատութեամբ վանահօր Միքայէլ
"վարդապետի Զամոյեանց Տփխիսեցւոյ, որ
"և գնեաց յօգուտ վանիցս իւրով*) սեփա-

(*) Իսպառ ստութիւն համարիլու է նորա սեփականութիւն լինելը, այլ ինչպէս Սինօդի գործքերէն յայտնի կերեւնուի՝ վանուց արդեամբն է գնած:

“կանութեամբ զԳողդ գիւղն ընդ միոյ Ջը-
“րաղացի, Թուին Հայոց ՌՅԴ. յամի
“Տեառն 1855,,:

Հարաւային դրան յաջակողման ծոցացած սիւնային քուրջէ ներքին կողմն։

“Կամաւն Աստուծոյ ես տէր Յովսէփ
“միաբանեցայ սուրբ ուխտիս ետու Ռ. սպ.
“և սպասաւորք սորա խոստացան ի տա-
“րին Ե. ժամ,,:

Հարաւային կողման քուրջէն ծոփրէն լուսամուտէ դրանն։

“Որդ և ի չարս Թուէաք ի սուրբ ե-
“կեղեցւոյս ՃՌ. դահեկան և Սպասա-
“ւորք սորա խոստացան ի տարոջն Գ. ա-
“ւըր ժամ, Գ. ինձ, Գ. շաբաթի աւրն Աս-
“տուծոյ,,:

“Ես Մխիթար որդի Գրիգորի ետու
“ի սուրբ կաթուղիկէս զՎ. ժանն փոդ
“ճթահանք և Ն. դահեկան և Սպասա-
“ւորք սորա տուին ի տարին Գ. աւր ժամ
“Բ. աւր Խաչուփին և Ա. աւր ժամ Յով-
“հաննիսին և Ա. աւր Մխիթարա որ բղ-
“խորանս շինեաց,,:

“Ես Թորոս ետու Խ. դահեկան և ըս-
“պասաւորք սորա տվին Ա. աւր ժամ յա-
“նուն իմ կատարեն,,:

“Ես Տիրատուր ետու Խ. դահեկան ի
“հաւգոյս և սպասաւորք ի տարին Բ. աւր
“ժամ անեն ինձ,,:

Հարաւային դրան յախակողմն:

“... ցի ետու Կ. դահեկան ի սուրբ կա-
“թուղիկէս և սպասաւորք սորա խոստա-
“ցան տարին ինձ Ե. աւր ժամ.. մամերին
“այգոյն. Գ. աւր Ա. աւր Հաշարդեղին և
“Ա. աւր Աղունեկան,,:

“Թագազնոյն և աշխարհակալ Աթա-
“բէկ Իվանէի 11) և արեան հարազատի
“իւրոյ տիեզերակալին զաւագ Սարգիս ա-
“միր սպասալարին և որդոյ Նորին Աւագին
“և Շահնշահի որ առի Կայենով և Կայ-
“ծունով մինչի ի յոկանա և մինչի ‘Նա-
“խիճևան և անտի մինչև Կարս Աստու-
“ծոյ աւգնութեամբն և ապա եկի ի սուրբ
“ուխտս ի յայս եկեղեցիքս և զսուրբս և
“ինձ անուշ թուեցաւ յիմ անուն արարի
“զիմ յիշատակ վերագրեցի և ետու Բէր-
“դաղն սուրբ Կաթուղիկէիս լուսացուի և
“ով որ հակառակիցի սևերես գայ և ե-
“րից սուրբ ժողովոյն Նզովեալ և յԱս-
“տուծոյ ամէն,,:

Նոյնպատուր խորշէ նորին:

"Կամաւն Աստուծոյ ես Խորինշահ ամու-
"սին Զաքարէի տն. Թիգան միաբանե-
"ցայ սուրբ ուխտս Այրի վանից և տու-
"աք երկու սկիհ.ք, մէկ բուրվառ, մէկ
"կանթեղ արծաթի և այլ արդիւնք Սպա-
"սաւորք սորա խոստացան ի տարոջն Գ.
"աւր ժամ,,:

Արեւելեան կողման հարաւային խորանէ որման վերայ գծեալ էր:

"Ես Աբրահամ Թոռն Աբրահամու որ-
"դի քեռ. Մարկոս վարդապետի շինեցի
"զխորանս հալալ արդեամբք իմովք և
"Թ.ագորաքայլեն ծոմն մեծ լբին որ ի
"Գառնի և Սպասաւորք սորա խոստացան
"յամենայն ամի պատարագել զՔրիստոս
"Գ. աւր յանուն իմ, Ա. ինձ, Ա. Մարկո-
"սի, Ա. Բարսեղին,,:
"Ես Պետրոս շինեցի զներքին խորանս
"յարդար գոյից իմոց և սպասաւորք սորա
"սահմանեցին ի տարոջն Թ. աւր ժամ.
"Բ. Խաչատրո, Բ. Յակոբա, Բ. Պետրոսի,
"Ա. Վարդեհերին, Ա. Սարգսի Ա. Մուկին,,:
"Ես Խաչատուրս զիմ այգին . . . .
"ետու ի սուրբ եղբայրանոցս և սոքա փո-

‘‘խարէն հատուցին ինձ ի տարին Ի. աւր
‘‘ժամ Ը. աւր ինձ և Ը. աւր իմ ծնողա-
‘‘ցըն որ խափանէ դատի„:

‘‘Ես Ստեփաննոսս ետու ի սուրբ Կա-
‘‘թուղիկէս Խ. դահեկան և Սպասաւորք
‘‘սորա խոստացան ի տարին Ի. աւր ժամ,
‘‘և ինձ Ը. Պետրոսի եղբաւրն իմոյ„:

‘‘Ես Համազասպ ետու սուրբ եկեղեցիս
‘‘Խ. դահեկան և Սպասաւորքն ետուն ի
‘‘տարին Ի. աւր ժամ ինձ„:

‘‘Կամակցութեամբ ամենայն եղբարց
‘‘հաստատեցաք ի տարոջն Ի. աւր ժամ
‘‘Բախտոս դարբնին աւր Ը. ժամ Գրամ-
‘‘կանն աւր Ը. Շատերոյն„:

‘‘Ես Վարդաշահ ետու սուրբ եկեղե-
‘‘ցոյս Ծ. դահեկան և պարգևեցին ինձ
‘‘Ի. ժամ Ը. աւր Սատատին, Գեղչուե-
‘‘նաց ստացա Ի. աւր ժամ Ը. ինձ Ը.
‘‘Շահկանն Ի. աւր Զունդին Ը. աւր
‘‘Զուրջին . . . . „:

‘‘Կամաւն Աստուծոյ ես . . . . նիկս
‘‘Ի. դահեկան ետու խորանս և սպասա-
‘‘ւորք սորա խոստացան ի տարին Ը. ժամ
‘‘Գ. աւր ժամ Բիբային Ը. կանց նոր . . .
‘‘Հ. դահեկան ետու սուրբքս Ը. աւր ժամ
‘‘ստ . . . իմ պապին Ը. աւր Սինանին Ի.
‘‘աւր . . . . դաննոա:

Արեւելեան կողման ծոյացած սիւնային խոյակի վերին ծայրը։

"Ես Յակոբս աշակերտ Կոմիտասին
"ետու Կ դահեկան և խոստացան Գ. աւր
"ժամ Ա. աւր Յակոբայ Ա. Սիմէօնին Ա.
"Գաբրիէլին կատարիչք աւրհնին *) յԱս-
"տուծոյ։

Արեւելեան Աւագ խորանի որման վերայ մեծանց էջ։

"Ես Հազարդեղս և Կոմիտաս տու-
"եալք ի սուրբ ուխտս Կ դահեկան և ըՍ-
"պասաւորք սորա ետուն ի տարին Ի. աւր
"ժամ. Բ. աւրն մեզ Ա. Աղանին ի տա-
"նի Քառասնիցն որ խափանէ դատի ի
"Քրիստոսէ. Ա. աւր Գոհարին կատարիչք
"աւրհնին որ ետ Ի. դահեկան։
"Ես Սարու ետու Խ. դահեկան և ըս-
"պասաւորքս խոստացան Բ. աւր ժամ.
"ես Ոսկի ետու Ի. դահեկան և խոստա-
"ցան Ա. աւր ժամ։

---

(*) Ինչպէս Հարաւային՝ նոյնպէս և արեւելեան որմոց վերայ արտաքուստ կան հատկտուր անիմաստ արձանագրութիւններ, զորս բերած են զանազան քանդուած շէնքերից և տաճարի շինութեանը պիտոյացուցել, և երբեմն Տաճարն վերանորոգելով՝ ի տեղիս տեղիս հին արձանագրութեան քարերն՝ է որ տեղափոխած են և է որ կիսով չափ քարը կտրելով ու արձանագրութիւնն տաշելով՝ գլխի վայր դրել են որման մէջ՝ ինչպէս որ յարմար է եղել շինութեանը, մեք զայնս երբէք չգրեցինք։

"Այս Ջաւրքուրս եւոու Ի· դաՀեկան և
"խոստացան Ը· աւր ժամ:

"Կաման Աստուծոյ ես Մանուչարս մի-
"աբանեցայ սուրբ ուխտիս եւոու Ի· դա-
"Հեկան և խոստացան Ը· աւր ժամ Աւե-
"տեաց Ճրագալուցին:

Արևելեան հիւսիսային խորանի որման վերայ։

"Կաման Աստուծոյ ես Նախավկա շի-
"նեցի զխորանս արդեամբք իմովք և
"Սպասաւորք սորա եւոուն ի տարին Գ·
"աւր ժամ, Ը· աւր ինձ, Ը· աւր Սիմոնին
"Ը· Կատարին:

## ՄԻՋԻՆ ՏԵՍԻՔ ԺԱՄԱՏԱՆ ՎԱՆՈՒՑ ԳԵՂԱՐԴԱՑ·

Ջրաշափառ Տաճարի առաջին արևմտեան որմանը կից է ընդարձակ հոյակապ և չքնաղակերտ Ժամատունն, որոյ մէջ ինչպէս ի վեր անդր յիշատակած ենք, կրացուի Տաճարի արևմտեան դուռն, կառուցած է սև քառակուսի երկոտասան խարսխաւոր սիւների վերայ, որոց չորսն են միջնասիւներ միապաղաղ բոլորշի միանման կափածոյ կապտագոյն կարծր քարից, որոց և վերնախարիսխներն դրուագաւոր են, իսկ ութն են դարձեալ միանման որմնասիւներ *), երկու երկու դէպ հարաւ և հիւսիս՝ և եր-

(*) Կան այլ ևս երկու որմնասիւներ, զորս համարիլու է արևմտեան անկիւնասիւնք, որոնք իւրեանց բարակութեամբն բաւականին տարբեր են միւս որմնասիւներից.



ՆԵՐՔԻՆ ԵՐԵՒՈՅԹ ԺԱՄԱՏԱՆ ԳԵՂԱՐԴԱՅ ՎԱՆՈՒՑ

կու երկու արեւելք եւ արեւմուտք Ժամատան տանիքի կամարաց չորս ծայրերն ձգած են ամեն մի միջնասիւների վերնախարսխաց վերայ, եւ երբեւ դարձուածք՝ յաջ եւ յահեակ իջած են երկոտասան որմնասեանց գլուխների վերայ, որով եւ պարարձած են Ժամատան գեղեցկազարդ յարկը. Նմանապէս բոլորաձեւ կիսագմբէթն, որոյ կեդրոնամիջին է մի բոլորշի լուսամուտ. Ներքին ընդարձակութիւնը կակւի երեք հատ միմեանց կից բարակ եւ կլորակ քառանկիւնաւոր կամարներից, եւ այն ընդարձակ տարածութիւնը հրաշազարդ քերուբաքանդակաւ հետ զհետէ քաղելով փոքրկացուցած է վերեւն, որով բոլորաձեւ կատարի մինչեւ նոյն իսկ կեդրոնամիջի բոլորշի լուսամուտը. առաջին դասու միջնասիւների առաջնակարգ կամարաց ձեղունը՝ որին կից է բուն տաճարի արեւմտեան որմն՝ ուր է նա եւ դուռն *), սկսեալ հիւսիսային կրկնայարկ խորանաց գլխէն մինչեւ հարաւային կրկնայարկ խորանաց գլուխն ամբողջապէս հիանալի քանդակագործութեամբ դրուագած են, որոց վերայ կտեսնուին ճարտար ձեւաց արհեստական քանդակների զանազան յօրինուածներ, եւ պէս պէս սխրագործ մանրանկար գծագրութիւնք սաղմնիշ բծերի, վարդից, շուշանաց, խաչից եւն. եւ դրան ձեղունի միջակետից կայ նա եւ կախուած չքնաղակերտ մի ջահ քարեայ, նմանապէս հարաւային երկրորդ կարգի եւ հիւսիսային վերջին կարգի կամարաց ձեղուններն ըստ ամենայնի զարդարած են գեղեցիկ քանդակագործութիւններով, զոր օրինակ հարաւայինը՝ ամեն կողմից խորշ խորշ քաղելով՝ ապա կամարներից մինչեւ որման տարածութիւնը

---

(*) Սա համարելու է արեւմտեան դուռն Տաճարին եւ արեւելեան ժամատան։

հնարակերտութեամբ ծածկած են հինգ հատ ամբողջ երկայնաձիգ քարերով, որոց վերայ յօրինած են զանազան հրաշագեղ ծաղկանց սքանչելարուեստ քանդակներ, իսկ հիւսիսայինը՝ իւր տարածութեան հաւասար ունի մի հատ չքնաղակերտ քառաթեւ խաչ, որոյ միջակէտին կայ գեղեցկագոյն վարդաձեւ ծաղիկ. այն ամեն յիշատակած հրաշագեղ քանդակներն՝ ճարտարարուեստ նկարչաց ձեռքով գոյնզգոյն երանգօք գեղազարդած են, թէպէտ և գեղօրէից գոյներն, իւրեանց նախկին պայծառփայլունութիւնը փոքր ինչ նսեմացուցած են, սակայն՝ փառաց առաւելութիւնը բովանդակապէս չեն կորուսցուցած: Ժամատունն ունի *) հինգ լուսամուտներ, որոց երեքն կբացուին դէպ ի հարաւ, մինն արեւմուտք և մինն արեւելք, և բաց ի հարաւային միջին լուսամուտէն՝ որ բաւականին լայն է, մնացեալներն նեղ և երկայնաձիգ են. ունի երկու դուներ, մին կբացուի արեւելք դէպ ի բուն Տաճարի մէջն. և մինն արեւմուտք դէպ ի դուրս. արեւելեան դրան կամարաձեւ ճակատի վերայ է արձանագիր շինութեան մեծափառ Տաճարին, և ճակատն զարդարած են մեծ և փոքր գեղեցիկ խաչերով ու մանրածաղիկ նկարներով, որոյ վերայ կայ նաև մի հատ մեծադիր շէշ սրբալոյս միւռոնի և առաջին մի հատ ձագար. յաջմէ և յահեկէ դրանը, սալայատակի վերայ հաստատած են երկու վէմ քարեր, որոց ամեն մէկի վերայ կան քանդակագործ մեծադիր վէմ խաչեր, յաջակողմեան վէմ խաչի վերայ Գ. Ճայ-

(*) Բաց ի սոցանէ կան այլ և չորս լուսամուտներ, երկուքն դէպ արեւելք՝ դրան գլխին, և երկուքն դէպ հիւսիս, վիմափոր եկեղեցւոյ դրան գլխին՝ որոնք Ժամատան մէջն կբացուին և չեն համարուիլ իսկապէս Ժամատանը, այլ Տաճարացն ։

կական տարբերութիւն միայն կայ և ո՛չ այնքան գեղեցիկ քանդակ իսկ ձախակողմեան վէմ խաչը այն աստիճան հրաշաճարտարութեամբ մանրանկար նուրբ փորուածով քանդակագործած է՝ որ տեսողն իւր գեղեցկութեամբն իրաւի կհիացնէ. սոյն այս հիանալի խաչի վերին ծայրի միջակէտին քանդակած է հրաշագործ պատկեր Հօր Աստուծոյ, որ յԱթոռ Աստուածութեանն բազկատարած բազմած՝ կարծես իւր երկնային խաղաղութիւնը կպարգևէ աշխարհիս. յաջմէ և յահեկէ են Փրկիչ Յիսուսի մարգարէութիւնն և հրաշագործութիւնն, մէկումն՝ Յիսուս վաստակած լինելով ճանապարհէն իբրև ծարաւի անձն *) Սամարացի կնոջէն ջուր կխնդրէ, և կինն սափորն ի ձեռին բարձրացուցած կմատուցանէ Փրկչին, և Յիսուս՝ իբրև ի զարմացումն կնոջն և ի ցոյց Աստուածութեանն կմարգարէանայ նորա հինգ այր փոխելը, իսկ միւսումն՝ իւր Աստուածային հրաշագործ ձեռքն դրած Բեթսայիթացի **) կուրի գլխոյ վերայ, Աստուածական զօրութեամբն կլուսաւորէ նորա աչքերն։ Այս գեղեցիկ խաչի ներքին ծայրի վերայ է Հայկական թիւն և քանդակագործ արհեստաւորի անունը այսպէս ‘‘ՌԿՐ թվ. խաչիս. Աստուած ողորմեա Տիմոթին և ‘‘Մխիթարայ յաւրինողիս,,. և ես ի սրտէ կաղաչեմ զերեսս մարդասէր Բարձրելոյն Աստուծոյ, զի բազմիցս ողորմեսցի և զհաւատացեալ հոգի սորա ի լոյս Աստուածութեան իւրոյ հանգուցէ, ըստ որում ահա դարաւոր ձախորդ ժամանակներ հոլովելով սորա ճարտար մատանց հիանալի գործը մինչև ցայժմ իբրև մի նուիրական բան կանգուն մնա-

---

(*) Յովհաննու աւետ. գլուխ Դ. և համ. Է։

(**) Մարկոսի աւետ. գլուխ Ը և համ. ԻԳ։

րով Աստուածային Տաճարիս մէջ, օտարազգի հնասէր ճանապարհորդաց առաջին փառք և պարծանք կընծայէ փառաւորել ցանկալի մայր Հայաստանին։ Կան դարձեալ արևելեան որմանը կից յաջ և յահեակ կրկնայարկ խորաններ. վերնայարկ խորանաց դռներ կբացուին միմեանց հանդէպ հիւսիս և հարաւ՝ ուր և կբարձրացուին չորս աստիճան որմնամած սանդղներով, իսկ ներքնայարկների դռներն կբացուին Ժամատան մէջ դէպ արևմուտք. Հարաւային կրկնայարկ խորանաց երկու փոքրիկ լուսամուտներն կբացուին դուրս դէպ արևելք, իսկ հիւսիսայինը չունին երբէք լուսամուտ. Ժամատան միջին բարձրութիւնն սկսեալ կիսագմբէթի բոլորշի լուսամուտէն մինչև սալայատակի կեդրոնն *) է քսան և հինգ կանգուն, երկայնութիւնն արևելեան կողմէն ցարևմուտ տասն և ութն քայլ, և լայնութիւնն հիւսիսէն դէպ հարաւ քսան և երկու քայլ. իսկ կրկնայարկ խորանններն են հաւասարաչափ մեծութիւնով, որոց երկայնութիւնքն են երեք քայլ, լայնութիւնքն երկու քայլ, իսկ բարձրութիւնքն չորս կանգուն։

ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ ՄԵԾԱԿԱՌՈՅՑ ԺԱՄԱՏԱՆՆ Ի ՆԵՐՔՈՒՍՏ.

Արեւելեան դրան վերին կամարի վերայ։

**«Ես մի կին Զուզայ . . . . . ոն Հա-**
**«սանայ եառ ի սուրբ եկեղեցիս . . սա-**

---

(*) Սալայատակի կեդրոնամիջին է վարդաձև քանդակագործ քար, որոյ մէջ տեղն կայ փոքրիկ ծակ, և սորա տակն է հոր, որ անձրևի և հալած ձիւների ջրերն կիսագմբէթի լուսամուտից ներս թափած միջոցն կժողովին հորի մէջ և ներքին ջրանցքովն կոչնչանան։

"ուրն ՃԵԻ. դաշնկան . . մաւն Զ ժամ
"ինձ Աստուածածնի աւրն որ խափանէ
"դատիցի:

Ի ճակատ արեւելեան դրանն:

"Ի ժամանակս Թագաւորազնոյն Զա-
"քարիայի և Իվանէին նորին հարազա-
"տի և որդւոց նոցին Շահնշահի և Աւա-
"գին և առաջնորդութեամբ Բարսղի մի-
"այնաւորի և աշխատութեամբ եղբարցս
"շինեցաւ Կաթուղիկէս մեծափառ, թուին
"ՈԿԴ:

Նոյն դրան վերայ գտանուած խաչերն շրջանակն:

"Զմահացեալս մեղաւք զՍարկաւագ
"Վարդանս համարէն միաբանաւքս յի-
"շեցէք ի Քրիստոս:

Արեւելեան հիւսիսակողման սիւնասեան վերնախորանի վերայ
կամարին ծայրին:

"Ես Նուրիկս Սոփթենցի ետու ի
"սուրբ Կաթուղիկէս Խ. դաշնկան և Սպա-
"սաւորքս սահմանեցաք Ի աւր ժամ որ խա-
"փանէ դատի յԱստուծոյ:

Այն արձանագրեան մեւս կողմն որման վերայ։

"Կամաւն Աստուծոյ ես Սիմէոն միա-
"բանեցայ սուրբ ուխտիս և տվի Ծ· դա-
"հեկան և Սպասաւորք սորա խոստացան
"տարին Գ· աւր ժամ ինձ։
"Ես Սալծուտս միաբանեցայ սուրբ
"ուխտիս և տվի Ի· դահեկան և խոստա-
"ցան Ը· աւր ժամ։

Ձախակողման վերնայարկի խորանի դրան սեմ։

"Ի յանուն յիշատակ սուրբ Թադէոս
"Առաքել խորանիս ի յիշատակ Կիրակոսի
"հաւր Գուլթի մաւր։

Աջակողմեան ներքնայարկի խորանի դրան ճակատի խաչին
շրջանակը։

"Քրիստոս ողորմեսցի Կարապետին և
"ծնողացն ամէն։

Խաչերէ վերեւ։

"Նստայք ի գեղջէ Երեւանայ մնեալ
"ի կալթ . . . . . . . . . . . . . . . . .
"հալալ ընչից իմոց շինեցի զերկու խորա-
"նքս և . . . . . . . . . . . . . . . . .
"կալթուղիկէիս և ետու զիմ այգին որ
"Երեւան ի . . . . . . . . . . . . . . .

"րոց և Սպասաւորք սորա ի տարին . . . Հօր
"Հոգո Ճարին Գ.. իմ մաւր մ ա Հ ա ռ ո ր . . ք
"Բ. Մխիթարին որ խափանէ սև երես . . . .
"առաջի Քրիստոսի Օ. ժամ Յովհաննու
"և սուրբ Յակոբա . . . . . . . . . . . . . .

Առաջին դրան յաջակողմեան միջնաւեան վերայ:

"Կամաւն Աստուծոյ ես Ստեփան մնեալ
"ի սուրբ ուխտս Հալալ ընչիւք իմովք սա-
"լեցի զկաթուղիկէս և Բ խորանս և խոս-
"տացան տարին Գ. աւր ժամ Բ. ինձ Ա.
"իմ մաւր Խութլումամին:

Առաջին դրան յահեակողմեան միջնաւեան *) վերայ:

"Կամաւն Աստուծոյ ես Յակոբ պապ
" . . . որդի և ամուսին իմ Խաթունս միաբա-
"նեցաք սուրբ Գեղարդանս և ի մեր Հա-
"լալ ընչից տուաք Ճ' դահեկան և Սպա-
"սաւորքս խոստացան Դ ժամ տարին. Ա
"ինձ Ա իմ Հաւրն Ա իմ Ջայխաթունին

---

(*) Սորա վերնախարսխի տակէն սկսեալ մինչև սեան կէսն կայր արձանագրութիւն, որոյ չորս կարգն խոպառ եղծուած լինելով կարդալն ինձանից անհնարաւոր եղաւ, իսկ մնացեալն՝ արձանագրի բովանդակ իմաստն չյայտնելու պատճառաւ չգրեցինք:

«Ժամ սուրբ Յակոբի տանին *) ՌԳ·
«Թ·Վ:

Նմանապէս չորից միջնասեաց վերնախարսխների անկիւնների մէջն թէ և կան փորագրած արձանագրութիւններ, բայց հատկոտր և անիմաստ։

ԱՐՏԱՔԻՆ ՏԵՍՔ ԸՆԴԱՐՁԱԿ ԺԱՄԱՏԱՆՆ ԳԵՂԱՐԴԱՑ ՎԱՆԻՑ.

Մեծակառոյց ընդարձակ ժամատունս այս, որոյ միջին տեսքը ստորագրելովս յիշած եմք թէ՝ կից է Տաճարի արեւմտեան որմանը, իւր արտաքին մեծագիր երեւութի մէջ գեղեցիկ՛ է և հոյակապ, կառուցուած է քառակուսի բոլորովին կարմիր յղկեալ քարից, և հիւսիսային կողման ամբողջ որմն՝ նմանապէս և կէս մասն արեւմտեան որմանը մինչև դրան մօտ, բայց ոչ տանիքի հաւասարութիւնը, վիմափոր եկեղեցեաց քարաժայռն է, որոյ վերայ ներքուստ գնացած են յարկի կամարներն առանձին որմնասիւներով. չկայ և ոչ մի կողմն ժամատան կամ արձանագիրք յիշատակի և կամ նշանաւոր քանդակներ, բաց ի արեւմտեան դրան ճակատէն, զոր հրաշագեղ ծաղկանց հիւսուածներով և մանրանկար քանդակագործ կամարներով սխրատեսիլ փառազարդած են. և բաց ի հարաւային կողման միջանցի մեծագիր լուսամուտէն, որոյ վերեւն քանդակած են բոլորշի գեղեցիկ ծաղիկներ և մի հատ խաչ, որոյ յաջ և յահեակն կան մի հատ ահարկու առ-

(*) Արձանագիրն խոպառ նոր լինելով՝ Հայկական թուականի սխալ լինելու մասին ինկապէս կասկածելու է, կամ դուցէ ինչպէս սովորութիւն էր՝ ամբողջ թիւն թողուլ զորութեամբ և կոտորակն միայն գրել։

լուծ՝ որ ձեռքերն և ոտներն ծալած խոռոժ հայեցուածքով կնայի, և մի հատ գիշախանձ արծուի, որ ողորմելի Թռչունն իւր գիշատիչ մագիլների տակն առած կոցոտե անգթաբար գլուխն կփրցնէ։ Ժամատունն իւր տանիքի կեդրոնամիջին ունի մի հատ կիսագմբէթ և մի հատ փոքր զանգակատուն, զոր կառուցած է հարաւային և արևելեան անկիւնի ծայրին՝ որից և կախուած են երկու զոյգ մեծ և փոքր զանգակներ, զորս կհնչեցնեն արևելեան դրսի կողմէն. ինչպէս յիշատակագրութիւնէն կհասկցուի՝ մի զոյգ մեծ զանգակներն Բէհպուտեանց իշխանազունքն ընծայած են յանուն Գեղարդայ Վանից, զոր օրինակ առաջին՝ ‘‘Յիշատակ է այս զանկակս հանգուցեալ կը-
‘‘նեազ մինիշկարբաշի Յովսէփայ Բէհբուդեանց և կո-
‘‘ղակցւոյ նորա Մարիամին և Թոռան նորին Յովսէփայ
‘‘ի կենաց ընդ երկայն աւուրս 1835 Յուլ. 23, ի դու-
‘‘ռըն Գեղարդայ Վանից,,. երկրորդն՝ ‘‘Այս զանկակս
‘‘ընծայեալ եղև սրբոյ վանիցն Գեղարդայ յիշխանացն
‘‘Բէհբուդեանց 12) յիշատակ նորայն գերդաստանաց իւր-
‘‘եանց կենդանեաց և ննջեցելոց. 1835 Յուլիս 23,,։
Նմանապէս մի զոյգ փոքր զանկակաց ուրիշ ուրիշ յիշատակագրութիւնքն կյայտնեն բարեպաշտ նուիրատուաց անուններն, զոր օրինակ առաջին՝ ‘‘Յիշատակ է Գեթ-
‘‘րոնեցի Առաքելի որդի Գրիգորի ի դուռն սուրբ Գե-
‘‘ղարդին. Թվ. ՌՃԽԲ ին։ Երկրորդն՝ ‘‘Թվ. ՌՃԺ.
‘‘յիշատակ է զանկակս խոջայ Նուրմէքրատ որդի Աւե-
‘‘տիքին սուրբ Գեղարդայ,,։

ՎԻՄԱՓՈՐ ԵԿԵՂԵՑԵԱՑ ՄԻՋԻՆ ՏԵՍՔԸ.

Ո՜րչափ և ո՜րքան ողջմտութեան զհետ երթալով հոգեկան ցանկութեամբ կսկսեմք նկարագրել մեր նախնի

վեհափառ Տէրանց և Քրիստոսազօր պայազատ սեպուհների դիւցազնական գործքերն, որոնք երկնային անանց փառաւորութիւնից երբէք չեն անմասն, և որոց գեղեցիկ անուններն և հոգեցատուր պանծալի յիշատակներն իբրև ամենագեղեցիկ ակն պատուական յարձանագիրս Տաճարին կփայլին գերապանծ փառօք. ապաքէն դարձեալ ահա ըստ ինքեանց իբրև դիմահար մարմիններ մեր աչաց առաջին հետ զհետէ կարձանանան, մանաւանդ Մեծարգի բարեպաշտ իշխանին Պռոշայ որդւոյ Վասակայ և նորա Աստուածատունկ շառաւիղաց վեմափոր զարմանագործ եկեղեցիներն, որոնք իբրաւի՛ նոցա անեղծական և անկողոպտելի փառաց մշտնջենաւոր կոթողներն են, նոցա Աստուածահաճոյ առաքինութեանց հանդիսի անմահ վկայքներն են, որովհետև երանելիքն իւրեանց տօնելի բարեպաշտութեամբ և հոգեկան ջերմեռանդագին սիրով որ առ Աստուած՝ կարծես ձեռք ձեռքի տուած երկարժամանակեայ մեծածախս աշխատութեամբ Աստուածային փառաց երկնանման տաճարներն այն աստիճան հրաշաճարտար արհեստակերտութեամբ զարդարել են, որոնք՝ թէպէտ դարաւոր ժամանակների անյաջող բերմանց, ցաւալի արկածից հանդիպելով՝ ամայութեան դառն մրուրը ճաշակեցին, սակայն իւրեանց նախկին փառաց պայծառութիւնն իսպառ չկորուսցնելուց յետոյ, դարձեալ այժմ իբրև գերընական Աստուածպաշտութեան զմայլելի գործ մի երևելով՝ հայրենասէր Հայերու և հնասէր ճանապարհորդաց առաջին բարձր ի գլուխ փառօք կպարծին, և ո՛րչափ որ մարդիկ ծարաւի անձամբ դիմելու լինին մանրակրկիտ նկարագրել նոցա սխրալի գործոց ամեն մի պարագաներն՝ չզովացած անդէն յետս կըդառնան հետ զհետէ հետաքրքրութեան գրգիռներ միայն

իւր մէջն զարթուցանելով. բայց որչափ սրտիս բնական բաղձանքն կձկտէին և կզօրացնէին իմ անզօր մտացս կարողութիւնն, չեմ դանդաղել երբէք տալ ոչ ըստ մասնեայ, այլ բովանդակապէս տեղեկութիւն հայրենասէր և հնասէր Հայ եղբարց, զոր ահա հետևաբար կսկսիմք խօսել։

Հրաշափառ Տաճարի ընդարձակ ժամատան հիւսիսային որման մէջէն կբացուին վիմափոր երկուց եկեղեցեաց դռներն, մինն կրկնայարկ խորանի մօտէն, և միւսն դարձեալ նոյն կողման վերջին որմնասեան մօտէն. առաջինը՝ որ մօտ է կրկնայարկ խորանին, զարմանակերպ վիմափորած է յանուն Ամենասրբուհւոյ Աստուածածնի, որոյ առաջի դռնէն ներս կմտնուի ուղղակի վիմափոր Տաճարի ժամատան մէջ, զոր վիմափորած են քառակուսի, բայց կիսամասն լայնութեան և բարձրութեանն բաժանած են, տախտաձև յատակը երկու թզաչափ բարձրացնելով. տախտի եզերքի միջակիտին կայ մի հաստ միապաղաղ բոլորշի սիւն առանց խարսխաց, բայց սեան գլխէն յաջ և յահեակ լայնադիր կամարներ են գնացած, և կամարաց վերին կողմէն կսկսի կիսագմբէթի ներքին ընդարձակութիւնը, որոյ միջին տեսքը գրուագաւոր է, և հետ ըղհետէ բոլորաձև փոքրացնելով կաւարտի նորա միջակիտի բոլորշի լուսամուտն։ Ժամատան հարաւային դրան հանդիպակշիռ դէպ ի յիշատակեալ սեան կամարի ճակատին կտեսնուին քարակոփ ահարկու և սոսկալի կենդանիներ, մէջ տեղն է մի հաստ սատանաթև արծուի, որ իւր մագիլներովն բռնած մի խոյ՝ կարծես թէ կըլանայ դէպ ի վեր. սորա յաջմէ և յահեկէ կան երկու հաստ մատակ առիւծներ, որոց անխոնարհելի պարանոցներն՝ անցուցած շըղթայի երկուց ծայրից օղմանեակներն, դոցա վրեն կայ

մի հատ եղջերաւոր եզան գլուխ, որ շղթայի մէջէն օղմանեակն առնելով իւր բերանը ատամնացի պինդ բռնած իրեն կհնազանդեցնէ։ Ժամատունն ունի երկու դռներ, մինն դէպ արեւելք, որ կբացուի բուն վիմափոր Տաճարի մէջն՝ և սորա դրսի ճակատն ծաղկանց նկարներով դրուագած է, ուր նաև կան երկու գլխաւոր առաքելոց պատկերներն, և կբացուի ընդարձակ Ժամատան մէջ, որոյ գըլխին կան երկու նեղ և երկայնաձիգ լուսամուտներ. ունի մի հատ կիսաբոլոր խորան պատարագի. սորա արտաքին ճակատի վերայ յաջմէ և յահեկէ կան երկու հատ մարդադէմ թռչուններ՝ գլխներին դրած արքայական շքեղազարդ թագեր, որոց տակիցն դուրս թռչելով իւրեանց գիսոց խոպոպիքը, այտերի վերայ կծածանին. խորանի յաջ կողմն կայ մեծադիր որմնախաչ, զոր մանրանկար գեղեցիկ ծաղկանց հիւսուածքներով և ոլորուն փաթոյթքներով խիստ սխրատեսիլ քանդակած են։ Ժամատան երկայնութիւնն՝ արեւելից դէպ արեւմուտք, է եօթն քայլ, լայնութիւնն՝ հիւսիսէն դէպ հարաւ՝ տասն և մի քայլ, իսկ բարձրութիւնն՝ սկսեալ կիսագմբէթի միջակէտի բոլորշի լուսամուտէն ցյատակն է քսան և մի կանգուն, ուր տեղ կան նաև ննջեցելոց գերեզմաններ. բայց ափսո՜ս որ տապանագիր չլինելով, չկարողացանք իմանալ թէ ո՞յք ոմանք էին նոքա։ Ժամատան արեւելեան դրանէն *) ներս կմտնենք բուն իսկ վիմափոր փառաւոր Տաճարն, զոր արհեստակերտած են խիստ չքնաղ և վայելուչ, կարծես թէ յար և նման աւագ Եկեղեցւոյ ձեւակերպութեանը առանց սեան, միայն միանման չորս հատ խարսխաւոր որմնասիւ-

---

(*) Սա կհամարուի իսկապէս արեւմտեան դուռն Տաճարին և արեւելեան Ժամատան։

ներ ունի հաստուածև եռակարգ բաժանած՝ բայց իբրև միակցուրդ ձևացուցած են, որոց վերնախարսխաց գլխից գնալով յաջ և յահեակ չորս կամարներն՝ պարաբարձած են գմբէթն. այդ կամարների ճակատներին միմեանց հանդիպակչեռ կան չորս հատ բոլորշի քանդակագործ գեղեցիկ ծաղիկներ, գմբէթի ներքին ընդարձակ տարածութիւնը առանձին զրուագաւոր բոլորշի կամարից սկսելով մինչև նորա կիսամիջի զրութիւնը, կան երկոտասան կամարաձիգ և սիւնազարդ շրջանակներ. իւրաքանչիւրոց վերին անկիւնների մէջն քանդակած են հրեշտակաց պատկերներ, եզան գլուխ, և այլ և այլ տեսակ ծաղիկներ. սոցա վերևից գնացած է կրկին բոլորաձև կամար և գմբէթի վերին զրութիւնն փոքրկացնելով՝ քանդակած են նոյնքան թուով դարձեալ կամարաձիգ շրջանակներ, և իւրաքանչիւրոց մէջ տեղն կան խաչաձև հիւսած հրաշագեղ ծաղիկներ, և ամեն մի խաչի գլխին մի հատ նուռն, ապա կաւարտի մինչև գմբէթի միջակէտի բոլորշի լուսամուտն. բայց ի աւագ խորանէն՝ յաջմէ և յահեկէ նորա կան այլ ևս երկու խորաններ, որոց դռներն դէմ առ դէմ կբացուին լայնարձակ սեղանի վերայ և դէպ ի սեղան ելքը հինգ աստիճան սանդղով հարաւային կողմէն միայն է. բեմի ճակատը չքնաղակերտ քանդակներով զրուագած են, նմանապէս նորա հարաւային սանդղոց գլուխն և հիւսիսային ծայրն՝ որ անբաժան է որմէն, կզարդարուին երկու հատ ամենագեղեցիկ քանդակագործ որմնախաչերով և մարդկան պատկերներով. բեմի առաջևն դէպ հիւսիս կայ դարձեալ մի խորան՝ որ ունի վէմքար պատարագի, զոր յարմար է կոչել աւանդատուն քան թէ խորան, որոյ դուռն կբացուի դէպ հարաւ Տաճարի մէջն. դրան ճակատին կան քանդակած վարդեր և մեծագիր բոլորշի չքնա-

ղակերտ ծաղիկներ. սրբանուէր աւագանը վիմափորած է հիւսիսային որման մէջ կից խորանին, որոյ տակէն կբղխէ մաքուր բարեհամ ջուր. արեւմտեան դրան մօտ կան մեծագիր երկու հատ վէմ Խաչեր, որոց վերայ է հետեւեալ արձանագրութիւնս. ‘‘Սուրբ Խաչս կոչի Գաբրիէլի, բարեխաւս տէր Մանուէլ 13) Եպիսկոպոսի ,, . ունի երկու նեղ եւ բոլորշի լուսամուտներ, մին դէպ հարաւ եւ մին արեւմտեան դրան գլխին. բարձրութիւնն փառաւոր Տաճարիս գմբէթի կեդրոնամիջի լուսամուտէն մինչեւ յատակն է քսան եւ չորս կանգուն. լայնութիւնն հիւսիսէն դէպ հարաւ ութն քայլ, եւ երկայնութիւնն՝ բեմի առաջէն մինչեւ արեւմտեան դուռն եօթն քայլ: Իսկ խորաններըն են հաւասարաչափ մեծութեամբ, չորս կանգուն բարձրութեամբ, երկու քայլ երկայնութեամբ, մի եւ կէս քայլ լայնութեամբ. Թէպէտ Տաճարիս միջին տեսքը նկարագրելով յիշեցինք որմասիւններն եւ կամարներն անուններ, սակայն դոքա ոչ թէ իբրեւ Տաճարի հաստատութեան մասին են շինած. որովհետեւ վիմափոր լինելով՝ երբէք կարօտութիւն չէր ունենալ այնպիսիներին, այլ իբրեւ զարդ կամ նմանութիւն կոփածոյ հատ կտոր քարերից կառուցած եկեղեցեաց:

ԵՐԿՐՈՐԴ ՎԻՄԱՓՈՐ ԵԿԵՂԵՑԻ.

Յառաջագոյն ինչպէս յիշեցինք, վիմափոր Եկեղեցւոյ մի դուռն եւս կբացուի մեծակառոյց Ժամատան հիւսիսային վերջին որմասեան մօտէն. Տաճարիս միջին տեսքը խիստ հիանալի արհեստակերտութեամբ վիմափորած է առանց սեան, բայց չորս կողմն ունի ութն որմասիւներ, եւ բաց ի հարաւային կողմէն՝ որոյ որմն իբրեւ կցորդ երեւելով՝ խաչաձեւութիւն կկորանցնէ, զրեթէ Տաճարը խա-

չափւոյ նմանութիւն ունի. ամեն երկու որմնասիւններն մի անկիւն կձեւացնեն, և իւրեանց վերնախարիսխաց գլխներից առանձին մէն մի կամար ուղղաձիգ բարձրանալով մինչև կիսագմբէթի տակն, ապա սրածայր կվերանան. կիսագմբէթի ներքին ընդարձակութեան շրջապատը շարակարգ գեղեցիկ նաներով զարդարած է և միջին տեղը բովանդակ դրուագաւոր է. միջակետին կայ մի հատ բոլորշէ լուսամուտ. եկեղեցին ունի մի հատ կիսաբոլոր սեղան իւր խորհրդանոցովն, որոյ տակէն կբղխէ ջուր բարեհամ, և բեմը որման հաւասար է շինած առանց փոքր ի շատէ յառաջ բերելու՝ ինչպէս Հայաստանեայց եկեղեցւոյ սովորութիւնն է, և եկեղեցւոյ յատակէն այնքան բարձր շինած չէ, հազիւ թէ երկու կամ երեք թիզ կլինի. ունի հիւսիսային կողմն մի հատ աւանդատուն, որոյ դուռն կբացուի դէպ արեւմուտք, և որոյ յատակն վիմափոր խոր աւազան վիմարու ի քաղցրահամ ջրոյ, նոյնպէս մի հատ ևս կայ սորա առաջին, որոյ մէջ հիւսիսային որման անկիւնէն վիմաբուխ ջուրն ժողովելով՝ վանուց հարկաւորութեան համար մանաւանդ ձմերային ժամանակներն այս ջուրն կըգործածեն. սորա վերեւն արեւմտեան որման վերայ կան քանդակագործ խաչեր և հետեւեալ արձանագիրս. ‘‘Կա-‘‘մաւն Աստուծոյ ես Գ․ումէս տվի ի մուլք,,. և սորա տորեն կայ այսպէս. ‘‘Սուրբ Խաչս բարեխաւս պարոն ‘‘Բուրթելին կողակցին Խամբէկուն որ մեր աւժար կա-‘‘մաւն այգին և բաղչէն տվի վախմ ի դուռն սուրբ Գե-‘‘ղարդայ,,:

Արեւմտեան և Հիւսիսային որմնասեանց անկեան մէջն.

,,Օգնականութեամբն Աստուծոյ մեք միաբանեցաք ‘‘պարոն Գ․ումէս պարոն Արգայ պեկիս պարոն Բուր-

‘‘Թէև մեր հայրենական մուլքն և այգին բաղչէն տու-
‘‘ւինք ի դուռն սուրբ Գէորգին վախմ ով այլայէ
‘‘ՅԺԸ. հայրապետաց նզովեալ ։ Թվ Ռ . . . ,, ։ Հարա-
ւային որման կէսն քանդած է շինած, և զանազան սքանչե-
լի մանրածաղիկ քանդակներով և քանի մի փոքրիկ պա-
տուհաններով զարդարած. սորա վերեն կայ անթուական
արձանագիր յիշատակի մեծին և բարեպաշտ իշխանին
Պռոշյ. ‘‘Ի տէրութեան բարեպաշտ Թագաւորացն
‘‘Վրաց Աւագին և Շահնշահի և որդոյ նորա Զաքա-
‘‘րիայի ես Պռոշ որդի Վասակայ յաղթէն Խաղբակայ
‘‘զանձագին արարի ի տերանց աշխարհիս զմեծահռչակն
‘‘Այրիվանս լերամբ և դաշտաւ և ամենայն կազմու-
‘‘թեամբ որ կայր ի սմա. փորեցի ի վիմէ տուն Աստուծոյ
‘‘յիշատակ ինձ և որդեաց իմոց և ամուսնոյն իմոյ Խութ-
‘‘լու խաթունին *) ,, ։ Տաճարի բարձրութիւնն սկսեալ
կիսագմբէթի միջակէտի լուսամուտէն ցյատակն է քսան և
երկու կանգուն, լայնութիւնն հիւսիսէն դէպ հարաւ է
տասն և մի քայլ, երկայնութիւնն արևելքէն դէպ արև-
մուտք տասն և չորս քայլ ։ Ունի մի հատ դուռն հարա-
ւային կողմն՝ որոյ գլխին կան երկու հատ նեղ և երկայ-
նաձիգ լուսամուտներ՝ որոնք կբացուին ընդարձակ ժամա-
տան մէջն ։

---

(*) Սա անուան հետագայ քանի մի բառեր կային՝ զոր յետոյ յաւելցուցած են, որ երբէք նմանութիւն չունին արձանագրութեան տառերին. ուստի արձանագրի հարազատութիւնն չկորանցնելու իրաւացի պատճառաւն՝ չգրեցինք.

## ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆ ՎԻՄԱՓՈՐ ՄԱՏՐԱՆԱՁԵՒ ԽՈՐԱՆԱՑ ԵՒ ԸՆԴԱՐՁԱԿ ԺԱՄԱՏԱՆՆ։

Մեծակառոյց հոյակապ Ժամատան արեւմտեան դրանէն դուրս ելած ժամանակն՝ դէպի յաջակողմն դրանը կից կտեսնուի միմեանց մէջ երկու հատ մատրանաձեւ վիմափոր փոքրիկ խորաններ, զատ զատ՝ Պատարագի վէմքարերով, եւ խորհրդանոցներով, առանց սոցա աւելի նըման են ճգնաւորաց միանձուքների խուցերի քան թէ խորանաց. ունին մի դռնակ եւ մի փոքրիկ լուսամուտ՝ որոնք կբացուին դէպ հարաւ. չ՚ունին երբէք վիմափորութեան ժամանակի յիշատակութեան արձանագիր. սոցա տանիքից սկսեալ Ժամատան արեւմտեան որման տակովն տարին եւ երկու քայլ գնալով բարձր դէպ հիւսիս՝ կան դարձեալ միմեանց մէջ վիմափորած երկու հատ միաձեւ խորաններ, առանձին առանձին Պատարագի վէմքարերով եւ խորհրդանոցներով. ունին մի դռնակ, երկու փոքրիկ լուսամուտներ, որոնք կբացուին դէպ արեւմուտք, սոքա նմանապէս չ՚ունին երբէք վիմափորութեան ժամանակի յիշատակութեան արձանագիր, եւ բարձրութիւններըն, լայնութիւններն եւ երկայնութիւններն հաւասար չափով են։ Սոցանից չորս քայլ հեռաւորութեամբ բարձր դէպ հիւսիս դարձեալ, մտնելով վիմափոր մի նեղ՝ բայց բարձր սրահ, որոյ երկոտասան քայլ երկայնութիւնն չափելուց զկնի, կհանդիպի առաջիդ վիմափոր ընդարձակ Ժամատան արեւմտեան մէկ հատիկ դուռն, ուր ներս մտնելով կբացուին աչացդ առաջեւ Աստուածահաճոյ առաքինութեանց հոգեզուարճ տեսարաններ. այն տեղ կը տեսնես ոչ ընդ աղօտ, այլ դէմ յանդիման գերբնական Աստուածապաշտութեան սխրագործութիւններն, կտեսնես Քրիստոնէական ճշմարիտ հաւատը հանդերձ կատա-

ըեալ գործովք, որ գերագոյն փառօք բարձր ի գլուխ կը
պարծի. այն տեղ կտեսնես համբերութեան հանդիսի
կատարեալ տիպն, և օրինակն, որով երանելիքը դարևոր
բազմաքիրտն և բազմածախս աշխատութեամբ հազիւ ի
գլուխ բերել կարողացել են այնպիսի զարմանագործ մի
բան, այնտեղ կտեսնես՝ երկրաւոր գոյք և հարստութիւնք
իրականապէս արհամարհելով վաճառելն, ագարակք և ըն-
տացուածք թողուլ ուրանալն. այն տեղ ի վերջոյ, կտես-
նես իսկապէս յօժարակամ խաչաբարձութիւն և Տիրա-
կան քաղցրաձայն հրաւիրանաց սիրողարար հետևողու-
թիւն, և վիմափորութեան ժամանակի յիշատակութեան
արձանագիրն կարդալով՝ զոր փորագրած են առաջնակարգ
յաջակողմեան միջնասեան արևմտեան երեսն սկսեալ
վերնախարսխէն, և տեսնելով որ այդօրինակ չնաշխար-
հիկ Աստուածպաշտութեան գովելի և գեղեցիկ յատ-
կութեանց տէրն պայազատ իշխանին Պռօշայ դիւցազն
Պապաք որդին է, կամիլս ի սիրոյ սրտիդ վերստին
նորանոր գոհութեամբ բարեբանել մեծին Պռօշայ ան-
մահ անունը, ըստ որում՝ ինչպէս նա ինքն կրթելով
իւր անձն Ճշմարիտ Աստուածպաշտութեան մէջ, ի մարմ-
նի քաղաքավարուել է միշտ առաքինի կենօք, նմանա-
պէս իւր հարազատ որդին իբրև Աստուածածաղիկ շա-
ռաւիղ վերընձիւղելով՝ համանման բարեպաշտութեանց
հօրն մեծին Պռօշայ, ցոյց է տուել իւր հոգևոր գեղեց-
կութիւնն բարեաց գործով և առաքինական առատա-
պարգև պտղովք, զարմանագործ հնարակերտութեամբ
տալով վիմափորել այս հրաշափառ ընդարձակ Ժամատու-
նը, որ ունի չորս հատ միանման միապաղաղ խարսխա-
ւոր բոլորշի միջնասիւններ և ութն հատ կիսաբոլոր որմնա-
սիւներ, երկու երկու՝ դէպ արևելք և արևմուտք, և եր-

կու երկու՝ հիւսիս և հարաւ, կամարաց ծայրերն միջ-
նասեանց վերնախարսխաց գլխներից երբև դարձուածք
յաջ և յահեակ իջնելով որմնասիւների վերայ, երրու
պարարարձած են ժամատան թանձրամարմին յարկը. միջ-
նասեանց կամարաց վերեն քառանկիւն խորշաձև փորելով
գմբէթի ներքին նիստը բաւականաչափ լայնացուցած են,
և վերեն հետզհետէ քաղելով ու մէջ տեղն մի կամար
թողնելով՝ աւարտած են մինչև միջակէտի քառակուսի
լուսամուտը, բացի հարաւային արևելեան և հիւսիսային
որմնասեանց յարկերից՝ զորս պատշաճապէս գեղեցիկ զը-
րուագած են. մնացեալ տեղերն անզարդ են, արևելեան
որմանն ճակատին բաց ի մանր խաչերից. նաև վիմափորած
են խիստ չքնաղակերտ քանդակներով ութն հատ մեծա-
դիր խաչեր, որոց երեք հատից յաջմէ և յահեկէ կլտե-
նուլն մարդկան հասա բազուկներ ձեռքերին բռնած մէկ
մէկ փոքրիկ խաչեր. սոցա առաջին կան քանի մի գերեզ-
մանք ննջեցելոց, որոց մէկի վերայ միայն կայր տապանա-
գիր, զոր օրինակ. ‘‘ Այս է հանգիստ պարոն Մէհրիկի ,,:

Ժամատունն չունի երբէք սեղան Պատարագի կամ
վէմքար. սորա բարձրութիւնն սկսեալ գմբէթի կեդ-
րոնամիջի լուսամուտէն յատակն է քսան և ութն կանգուն,
լայնութիւնն՝ հարաւէն դէպ հիւսիս տասն և եօթն քայլ,
և երկայնութիւնն՝ արևելքէն դէպ արևմուտք տասն և
ութն քայլ:

ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ ՎԻՄԱՓՈՐ ԸՆԴԱՐՁԱԿ ԺԱՄԱՏԱՆՍ·

Առաջին դուռն — յաջակողմեան միջնաւեան սիւնաձեան երեսին։

"Ողորմութեամբն Աստուծոյ ես "Պապաքս 14) որդի Պուաշոյ և ամուսին իմ "ըՌուզուքան փորեցաք գծամատունս յինք- "Նաքուն վիմաւ յիշատակ հոգւոց մերոց, և "զաւակ մեզ անմահ ի հալալ արդեանց "մերոց և եղև առաջնորդութեամբ Տէր "Մարգարի,,. Թվ. ՉԼԷ։

Առաջին դուռն — յահեակողմեան միջնաւեան սիւնաձեան երեսին։

"Ս. . սուրբ Նշան տէրունական, Սիմէոն "վարդապետի լեր պահապան, հոգւոյ Նորա "պատսպարան, և յանցանացն քաւարան, "որ ետ պարգևս անանցական, եկեղեցւոյ "սուրբ Գեղարդեան, զամաւորքս հրաշա- "զան, զարդարեալ բանիւ Աստուածական, "իւր յիշատակ անջնջական, և բխ. . միշտ "յաւիտեան, պայծառութիւն տաճից լըր- "ման բոլոր ամաց հանդիսարան, զոր ըս- "տացայ բազում բաղձմամբ ի դուարճու- "թիւն Նորոգ մանկանց. բէչէալ տանէն,,։

Յիշատակեալ վիմափոր ընդարձակ Ժամատան նեղ
սրահէն դուրս գալով ու դրան աջակողմն բարձրանալով
վերև դէպ ի քարաժայռն, ապա նորա երեսօքն յետս դառ-
նալով դէպ հարաւ մինչև վիմափոր եկեղեցեաց հարթա-
յատակ տանիքն, կան այն տեղ դարձեալ երկու հատ
մանրաձև վիմափոր խորաններ՝ միմեանցից հաղիւ ինն
քայլ հեռաւորութեամբ, բայց մի կարգի մէջ. մինը է
ամբողջ վիմափոր, ուր ներս կմտնուի հարաւային դրանէն
նախ և յառաջ փոքրիկ սրահակը, ապա նորա միջէն ա-
ռանձին դռնակով բուն իսկ խորանը, զոր խիստ մաքուր
և գեղեցիկ վիմափորած են. ունի վէմքար Պատարագի
իւր խորհրդանոցովն և մի հատ փոքրիկ բոլորշի լուսա-
մուտ դէպ հարաւ, և սրահակի դրան հանդիպահայեաց
հիւսիսային որման վերայ կայ վիմափորութեանն ժամանա-
կի հետևեալ արձանագրութիւնն. ‘‘Ի Թվ. ՉԹ. Գրի-
‘‘գորէս և Վ‿րթանէս եղբարք որդիք Մխիթար Սարգա"
‘‘զմատուռնս փորեցաք յիշատակ մեզ և ննջեցելոց մերոց
‘‘յիշեցէք յաղաւթս ձեր,,։

Իսկ միւս վիմափորի հարաւային որմն կոփածոյ քա-
րից կրաշաղաղ շինած է, և նոյն կողման դռնակէն կը-
մտնուի ներս ուղղակի վիմափոր խորանը, որն փոքր ինչ
երկայն և պտուտիկ է, ունի վէմքար Պատարագի իւր
խորհրդանոցովն, և մի հատ փոքրիկ լուսամուտ դէպ հա-
րաւ. արտաքուստ դրան ճակատին կամարաձև փորագրած
են հետևեալ անթուական արձանագրութիւնն ‘‘Քրիս-
‘‘տոս ողորմեսցի Կարապետին և իւր ծնողացն և եղբար-
ցըն ամէն,,։

## ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆ ՄԱՏՐԱՆ ՍՈՒՐԲ ԳՐԻԳՈՐԻ ԼՈՒՍԱՒՈՐՉԻՆ·

Գմեղարդայ հօյակապ Տաճարի արեւելեան հիւսիսային կողմն գրեթէ կից անկեանը՝ կայ փլած շինուածոց պատնէշ, ապա կամարակապ յարկ կից քարաժայռին, որոյ յատակէն տասն և երկու կանգուն սանդղով բարձրանալով վերև, դէպի յարկն, քարաժայռի արեւմտեան երեսին փորագրած են մի դռնակ, որից ներս կմտնուի ուղղակի միջին փորագիր խորանը. սորա յաջմէ և յահեկէ կան փորագրած միանման երկու խորաններ ևս. ունին վէմքարեր պատարագի խուրանից խորհրդանոցներումն, միջին խորանի հիւսիսային որման վերայ՝ զոր կհամարուի ճակատ յաջակողմեան խորանի դրանն, փորագրած են Հայկական Թիւն այսպէս. ''Ի Թվին ՈԳ,,. և փոքր ինչ ցած նոյն որման մէջ տեղն կայ այսպէս. ''Ամենասուրբ երրորդ,,. միջին խորանի արեւմտեան դրան ճակատին արտաքուստ կայ հետեւեալ արձանագիրս. ''Սուրբ Գրիգոր Հայոց Լուսաւորիչ,,։

### Արտաքին տեսք վէմափոր եկեղ. Ժամատան և մատրանային խորանոց։

Սոցա արտաքին երեւութից երբէք հեռուէն չէ կարելի կարծել թէ քարաժայռերի մէջերն կան այս օրինակ զարմանակերտ վիմափոր եկեղեցիք, Ժամատուն կամ խորաններ, եթէ չ՝ լինի առանձին ցոյց տուող ծանօթ անձըն. բայց բազմաթիւ մեծադիր վէմ խաչերն՝ զորս հիանալի քանդակագործութեամբ, է որ՝ փորած են քարաժայռերի երեսներին, և է որ՝ տեղ տեղ կանգնեցուցած են, գեղեցիկ հետաքրքրութիւն զարթուցանելովն մար-

գոյս մէջն ու ցանկալով տեսնել և հասկանալ նոցա ի՞նչ անուանով վերափոխելու և կանգնեցնող պատճառներն, քարաժայռին մօտեցած ժամանակն յանկարծ կհանդիպիս վերափոխուած դռներին, և հետեւաբար ներս մտնելով ու տեսնելով սխրագործ արհեստակերտութիւններն, հոգեկան լցեալ ուրախութեամբ վախճան կըդնէ իւր գեղեցիկ հետաքրքրութեանը։

Պարիսպ վանաց Գնդեվանքայ։

Մ՚նաստանիս պարիսպն՝ զոր կիսակոփ կրաման քարերով հաստատապէս բարձրացուցած են, հարաւային կողմն հարիւր տասն և հինգ քայլ երկայնութեամբ ընկնելով՝ որոյ տակէն խոխոջալով կանցնի Եգատ գետն, և եօթանասուն քայլ լայնութեամբ արեւելեան և արեւմտեան կողմերից քառակուսի կդառնայ բարձր դէպ հիւսիս, ապա ձորի հիւսիսային լանջակողմովն հաւասար դրից երկայնութեան հարաւային կողման շրջապատելով՝ պարսպի երկու ծայրերն աւարտած են կից արեւմտեան քարալեանը, որտեղ կան ի հնուց վերափոխուած քանի մի սենեակներ. վանուցս այս պարիսպն ունի իւր շրջապատն չորս հատ բուրգեր, մին արեւելք, մին հիւսիս, մինն հարաւային կողման մէջ տեղն և մին է արեւելեան և հարաւային անկիւնը. ունի երեք հատ դռներ, մի մի դէպ արեւելք և հիւսիս և մի կամարակապ մեծ դուռն դէպ արեմուտք, որտեղից է համարեա սովորաբար հասարակաց մուտք և ելքն. սոյն դրան ճակատին արտաքուստ քանդակագործած են երեք հատ գեղեցիկ խաչեր և փորագրած են շինութեան ժամանակի արձանագիրն հանդերձ Հայկական թուականաւն այսպէս. «Թվ. ՈՃԾԷ. շի-

''Նեցան դարվաղէս տնտեսատունի վերին կողմն շրջապա-
''տեւս առաջնորդ Գանձլարան վարդապետի որ է Նորա-
''բոդրոջ որ է սա ի շառաւիղէն Պռոշ իշխանին որ է եղ-
''բօր որդի Դաւիթ *) վարդապետի,,: Պարսպի արեւելեան որման կիսէն սկսեալ մինչև Հարաւային որման վերջին ծայրը միջին կողմն, պարսպին կից կարգաւ շինած են կամարակապ կրամած կոփածոյ քարից Հանդերձ կրկնայարկներովն տասն և եօթն թուով սենեակներ **). մի կամարակապ տնտեսատուն իւր ներսի մուտնովն, և մի Հատ նոյնպէս կամարակապ մարագ, և ինչպէս մարագի դուռն նմանապէս բոլոր սենեկաց յետին կողման լուսամուտներն կբացուին պարսպի միջից դուրսն դէպ արեւելք և Հարաւ, իսկ առաջին կողման լուսամուտներն կբացուին պարսպի մէջն ներսին կողմն դէպ արեւմուտք և Հիւսիս. կայ Հիւսիսային կողմն կամարակապ մի մեծ դոմ, բայց ոչ պարսպին կից, և մի Հատ փոմափոր դոմ ես արեւմտեան կողմն, որոյ տանիքի վերայ շինած է եղել յառաջադոյն կամարակապ սենեակ, բայց այժմ կիսաւեր:

---

(*) Սա ինքն իսկապէս թաղուած է Աստուածածնի Տաճարի վիմափոր ժամատան մէջն. միայն ներկայ վանահայրն տպիտարար տապանաքարն իւր բնական տեղէն շարժելով՝ պիտոյացուցել է մենատանի Հարաւային դրան սալայատակին. կայ վրան տապանագիր այսպէս. ''յԱյրի վանս է Ա. Հայրենի մուլք ի ցեղէն սորա. Այս է ցե-
''ղէն իշխանաց Պռոշայ, այս է Հանգիստ Դաւիթ աստուածաբանու-
''թեան վարդապետի որ է շինող Աստուածածնի ժամատան կա-
''ռուցողի Ծամեայ նա փախճանի երթալ առ տէրն ամենի ով
''որք տաոիս Հանդիպեցէ լի սրտիւ ողորմի տայցէ. Թվ. ՌՃԾԴ.

(**) Ցիշատակեալ սենեակներից է որ միմեանց մէջ երկու կամ երեքն շինած են, բայց մեք մի մի Հաշուեցինք, ըստ որում ինչպէս երևի՝ յետոյ խառնած են միմեանց.

## ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆ ՎԻՄԱՓՈՐ ԵԿԵՂԵՑԻՈՅՆ ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ

### ԱՐՏԱՔՈՅ ՔԱՆ ԶՊԱՐԻՍՊՆ ՎԱՆԱՑ ԳԵՂԱՐԴԱՑ·

Մենաստանիս պարսպի արեւմտեան կամարակապ դըռանէն դուրս գալով՝ ուղղակի սորա հանդէպը վաթսուն քայլ հեռաւորութեամբ կայ պատնէշ, որոյ վերայ կաես-նուի հնութեան նշմարանք. մի ծայրն կցած է վերեն քարալեռանը եւ միւս ծայրն գնացած է զառ ի վայր ձորը. քարալեռան արեւմտեան երեսին վիմափորած են կրկնայարկ եկեղեցիք. ներքին յարկն կբաղկանայ միմեանց մէջ վիմափորած երեք հատ խորաններից, որոնք ունին վէմքարեր պատարագի իւրեանց խորհրդանոցներումն. նաեւ մի մի փոքրիկ լուսամուտներ՝ որոնք կբացուին դէպ արեւմուտք. նմանապէս միջին խորանի դռնակն դէպ նոյն կողմն կբացուի. իսկ յաջմէ եւ յահեկէ եղած խորանները դէմ առ դէմ կբացուին միջին խորանը. սորա հարաւային որման վերայ կայ ներքուստ հետեւեալ արձանագրութիւնն եւ եթ. «Ո՜վ պատարագողքս զԿոմիտասն եւ զ՟ազարդեղն յիշեցէք»։ Սոյն խորանաց կից կան միմեանց մէջ վիմափորած բաւականին մեծութեամբ երկու սենեակներ, որոց դռներն արեւելք եւ արեւմուտք կբացուին։ Իսկ վերնայարկ եկեղեցին՝ որ կբաղկանայ հինգ խորանից վէմքարերով պատարագի եւ իւրեանց խորհրդանոցներումն, վիմափորած են յանուն ամենասուրբ կոյս Աստուածածնի, եւ արեւմտեան եւ հարաւային որմունքն շինած են կրամած կոփածոյ կարմիր քարից, որոց դրսի երեսներն քանդակագործ գեղեցիկ խաչերով եւ թռչնոց պատկերներով վայելչապէս զարդարել են, եւ ինչպէս արձանագրութիւնքն կարդալով՝ ոչ թէ վիմափորութեան ժամանակինը՝ այլ

հոգեցատուր յիշատակիք պարգեւողներինը, կտեսնենք որ երեսուն տարի աւելի յառաջ է վիմափորած քան դշխնութիւն մեծահռչակ Մենաստանին Գեղարդայ. բայց արեւմտեան դրանէն ներս մտնելով, հարաւային որման վերայ լուսամտի մօտն կտեսնես եկեղեցւոյս նորոգութեան ժամանակի արձանագրութիւնն հանդերձ հայկական թըւականաւն այսպէս. ''Ի թվիս ՉԻ նորոգեցաւ սուրբ Աստուածածինս,, :

Նորա նորոգութեան թուականն դարձեալ երեսուն ամօք յառաջ կգտնենք քան զժամանակն վիմափորութեան ընդարձակ Ժամատանն Պապաքայ որդւոյ մեծին Պռօշայ. եկեղեցին ունի մէկ դուռն եւ երեք լուսամուտք դէպ արեւմուտք եւ մի լուսամուտ հարաւային կողմն, եւ ինչպէս եկեղեցւոյ հարաւային որմն կիսով չափ, նմանապէս մի կարգի մէջ գտնուած շատ վիմափոր խցեր՝ որոնք եղած են բնակարան հրեշտակակրօն անձնուրաց միանձունքների, 1840 թուի մեծ երկրաշարժին իսպառ փլած են, որոց միմեանց վերայ կուտակած մեծամեծ կտորներն դեռ ցայսօր հաւաստի վկայք են այն աշխարհաւեր ցաւալի արկածիցն. եւ արտաքուստ եկեղեցւոյ արեւմտեան երեսն բովանդակ լցուցել են հոգեցատուր յիշատակաց արձանագրութիւններով, սկսեալ հիւսիսային անկիւնէն մինչեւ դրանը ձախակողմն հետեւեալ կարգաւ :

ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ՎԻՄԱՓՈՐ ԵԿԵՂԵՑՒՈՅՆ.

Արեւմտեան հիւսիսային անկիւնն :

''Ես Տիրանուն ետու ի սուրբ Աստո-
''ւածածինս Խ դահեկան եւ Սպասաւորքս

‘‘խոստացան ի տարօջն Բ աւր ժամ, Ա
‘‘ինձ և Ա իմ ծնողացն:

‘‘Ընծայք եկեղեցւոյս որ ի Նորագա-
‘‘ւիթ զոր ետուն Դանիէլն եղբարք ի
‘‘սուրբ եկեղեցիս ի պատկեն Ջաղացն. Գ
‘‘աւր ժամ, Ա աւրն ի եղբաւրն Մխի-
‘‘թարա ազգական իւրեանց ետ զայգին իւր
‘‘Գ աւր ժամ իւր հոգ":

‘‘Ի թվ. ՈԼ. ես Տէր Ստեփաննոս 15)
‘‘Աղուանից կաթուղիկոս եղէ միաբան
‘‘սուրբ ուխտիս Այրի վանաց յառաջնոր-
‘‘դութեան հաւրն Գրիգորի, և ետու զԱնդ-
‘‘րէի Առաքելոյ նշխարհն և սուրբ նշան և
‘‘ծննդոց Յովհան" և բնակիչք տեղոյս խոս-
‘‘տացան ինձ, զտաւն փոխման Տիրամաւրն
‘‘Գ նա" աւուրսն յամենայն եկեղեցիս պա-
‘‘տարագել զՔրիստոս:

‘‘Ես Առուտիկ ետու Խ դահեկան ի
‘‘սուրբ Աստուածածնիս ի տարօջն Բ աւր
‘‘ժամ, Ա աւրն ինձ, Ա աւրն ազգին,,:

Նոյն որման մէջրեղն:

‘‘Ի թվ. ՈԻ.Զ. ես Ստեփաննոս Կուտ-
‘‘կեանց ետու զիմ հայրենի հողն զՔարա-
‘‘փաւղոց, ետու ի սուրբ ուխտս յառաջ-
‘‘նորդութեան հաւրն Գրիգորոյ Դ աւր

“ժամ ի տարօջն Ստեփաննոսի որ և խառ-
“նեցաւ ի մարեմոյն մեծաւ աշխատու-
“թեամբ, Ռ՟ աւր ժամ Մ՛արեմորոյ, Գ·
“աւրն հաւրն ու Գ· աւրն մաւրն և Բ· աւր
“Միրախտին:

“Ես Ուրբաթ Կաւայտկեցի հող այգոյ
“ետու և Ճրագալուցի զատկի Բ· աւր ժամ
“իմ եղբ”:

“Ես Գոլս և Երևանո տանուտեարքս
“և պարոնայքս ի ժամ մահուան Գուլխս
“գիր յղարկեցաք և զհայրն կոչեցաք և նա
“իւր քահանայիւք և Եպիսկոպոսովքն հա-
“ղորդեցոյց և ի գերեզմանահանգոյց տա-
“ւաք զխնկեալքն իւր ընծայիւքն ի Այրի
“վանս· Ա· աւր ժամ Գոլնի Ա· Վ՟արդինա
“Պատրիին:

“Ի Թու” ԽԹ· Քրիստոսասէր իշխանաց
“իշխանքն Զաքարէ և Իվանէ վերստին
“դարձոյց զՋուրն ամառնամատակի Եշ և
“ուրբաթի ի սուրբ ուխտս զԱ” աւրն որ է
“ուրբաթ և բնակիչք սորա խոստացան
“զԱւագ խորանս սուրբ Աստուածածնի բո-
“վանդակ տարին պատարագել զՔրիս-
“տոս յանուն նոցա:

“Ես Պատրիկս ետու ի սուրբ ուխտս Ի·
“դահեկան և Սպասաւորքս խոստացան ի
“տարին Ա· աւր ժամ ով կատարէ աւրհնի

"ի Քրիստոսէ։| Ես Լորիկս ետու Կ դա-
"հեկան և սոքա ետուն Գ. աւր ժամ, Ա
"ինձ, Ա Հէրէշահի, Ա Երեմիայի. որ խա-
"փանէ դատի։

"Ես Ազիզս մնալ ի տուն Խութլու
"խաթունին և Պուղշոյ ետու Ի դահեկան
"և Սպասաւորքս խոստացան ի տարին Ա
"աւր ժամ որ խափանէ մերոց պարտա-
"կան է,,։

Նոյն որմանն լուսամտոյն վերևն ։

"Ես Հաքար բէկ որդի Աբէլեայ ի Թվ.
"ՌԱ միաբանեցաք սուրբ Աստուածածնիս
"և սուրբ Լուսաւորչիս և սուրբ Գեղար-
"դիս կանգնեաց զխաչս սուրբ բարեխօս
"ինձ և ծնողացն,,։

Արեւմտեան դրան դրան ճակատն շրջապատն ։

"Երկրպագութեամբ սուրբ Նշանիս բդ-
"Մխիթար քահանայս յաղաւթս յիշեցէք,,։

Նոյն դրան յաջակողմն, խաչէն վերևն։

"Ես Զաքարէ մնալ ի սուրբ Աստո-
"ւածածնիս նորոգեցի զԱստուածածինս
"..հալալ արդեանց իմոց և գնեցի զդատա-
"ւորի հողն Ի դահեկանի և զխողայ խոյ-

‘‘տէրն Արթզոյ ի Խասանայ Ի դաՀեկանի
‘‘ետու ընծայք սուրբ Աստուածածնիս և
‘‘Սպասաւորքս խոստացան Բ աւր ժամ,
‘‘Ա. ինձ Ա. Մամքանոյս որ գայս Հայրենիքս
‘‘այս է եկեղեցոյս Հանցէ ՅԺԸ. Հայրա-
‘‘պետաց նզոված է,,։

Սոյն արձանագրութեան տակէ խաչէ պատուանդանէ վերայ։

‘‘Սուրբ խաչս բարեխաւս Հայր Գրի-
‘‘գորին և ծնողացն իւր,,։

Խորանայէն Հողման կէսէ Հոմարէ շրջանակէ վերայ։

‘‘ՇնորՀիւ Աստուծոյ . . . . . . Վար-
‘‘դաբուտ . . . . . . նաՀսդել ի սուրբ
‘‘ուխտիս Ի դաՀեկան Արթզա գիւղի Հողն
‘‘Շուշան զալու այգին և խոստացան . . . . ,,։

ԱՌԱՋՆՈՐԴՔ ԱՅՐԻ ՎԱՆԱՑ ՍՐԲՈՑՆ ԳԵՂԱՐԴԱՑ.

ի Թուին Հայոց

Տէր Գրիգոր, յաւուրս սորա գոյ ի սուրբ ուխտս Այրի վանաց կաթողիկոսն Աղուանից տէր Ստեփաննոս և տայ նշխար սրբոյ Առաքելոյն Անդրէի, զսուրբ Նշանն և զծննդոց Յովհա։ ՈՂ

Տէր Բարսեղ միայնաւոր, յաւուրս Թագաւորազնոյն Զաքարէի և Իւանէի շինէ զՀրաշափառ Տաճարն սրբոյն Գեղարդայ։ ՈԿԳ

Տէր Մարգար, յիշատակեալ ի վեր անդր
յընդարձակ վիմափոր ժամատան յար-
ձանագիրս Պապաքայ որդւոյ բարեպաշ-
տին Պռոշայ։ ՉԼ.Ը։

Զաքարիայ միայնաւոր, տեսանի յարձա-
նագիրս Տաճարին ի հիւսիսային կողմն
մերձ աւաղանին, բայց անթուական։

Տէր Յովհաննէս, յիշատակեալ ի յիշատա-
կարանի Աւետարանի միոյ յամի Տեառն
1475։

Տէր Աստուածատուր Եպիսկոպոս, այր ե-
ղեռնագործ և վնասիչ հայրենեաց, որ
ընդ համանմանեացն իւրոց ընդ Մելքի-
սեդէկ Կաթողիկոսի և ընդ չարաբարոյ
Մանուէլ Եպիսկոպոսին Հաւուց — Թա-
ռայ գնաց յԱսպահան քաղաք առ Շա-
հապասն և եբեր զնա ծանու զօրօք ի
Հայաստան աշխարհ, որով և պատճառ
կորստեան եղև անթիւ անմեղ բազմու-
թեանց յամի Տեառն 1603։

Դաւիթ Եպիսկոպոս ի տոհմէ Պռոշ իշ-
խանին, որ եկաց յԱռաջնորդութեան ի
1635 ամէ ց 1675 ամն։

Ստեփաննոս Եպիսկոպոս, եղբայր վերնոյն,
այր գիտնական, եկաց յԱռաջնորդու-
թեան յամս չորս, և ի յերկրաշարժու-
թեան յամի 1679 եղև ընդ փլատակաւ
եկեղեցւոյն անապատին սրբոյ Անանիայ
Առաքելոյ որ յԵրևան։

Դաւիթ Եպիսկոպոս, եղբօր որդի վերնոյն այն է Դաւիթ Եպիսկոպոսի, անմիջապէս զկնի նորա. սոքա երկոքեան ի միասին յիշատակին ի յիշատակարանի Յայսմաւուրի միոյ եղելոյ ի գրանոցի Մայր Աթոռոյ սրբոյ Էջմիածնի ի թուին Հայոց: ՌՃԾԵ

Պետրոս վարդապետ Ջահկեցի, յիշատակեալ ի Ջամբռ անուանեալ մատենին Հայոց ՌՃՁԲ. ցՌՃԳԵ, յամի Տեառն 1740:

Ղուկիանոս վարդապետ, յիշատակեալ ի նոյն Ջամբռ անուանեալ մատենի:

Տէր Օհան վարդապետ Հին-Նախիջեւանեցի, այր աշխատասէր, հրամանաւ Յովհաննէս Ը. Կաթողիկոսին Կարբեցւոյ կարգի վանահայր ի 1840 ամի և թափէ զՏաճարն ի վերջին ցաւալի ամայութենէ, առնէ զնոյն նորոգութիւնս, հաստատէ առ պարսպաւ վանուց զպարտէզս, տնկէ զմրգաբեր ծառս, զարդարէ զեկեղեցին զանազան հոգեցատուր յիշատակօք նուիրելօք ի բարեպաշտօն ժողովրդոց Տփխիսու. ապա կարի նեղեալ յանարգար և ընչաքաղց ընթացից ումանց հոգևոր իշխանաւորաց թողու զվանս, երբեմըն գնայ ի Տաթև, յետոյ եկեալ ի հայրենիս իւր ի Նախիջեւան կնքէ զաղցաւոր կեանս իւր և դնի ի Քեօհնաքաղաք կոչեցեալ հասարակաց Հայոց հանգստարանի:

Մարտիրոս վարդապետ Վաղարշապատ-
ցի, ընկերակից և գործակից վերնոյն, յետ
նորա կալով զամս չորս, վախճանի ի 1844
ամի և դնի առ որմով հարաւային դրան
Գեղարդայ վանուց։

Միքայէլ վարդապետ Զամօյեանց Տփխի-
սեցի, յաւուրս երկարատև վանահայրու-
թեան սորա յաւելան առ կալուածս վա-
նուցն իբրև սեփհականութիւն՝ Գողթ,
Բիւրաքեանց և Թարարաշ գիւղօրայքն,
որպէս ցուցանեն ձեռն կալուածագիրքն որ
ի գրքոջս, եղև նորոգութիւն տանեաց
Տաճարին, շինեցաւ դժուարագնալի ճա-
նապարհն վանուց ի դիւրութիւն բարե-
պաշտ ուխտաւորաց։

Եղիշէ վարդապետ Ամատունի, օգնական և
գործակից նորին։

Պօղոս Եպիսկոպոս Մախասեան և գոր-
ծակից նորա Յովհաննէս վարդապետ Տա-
թևացի։

Ստեփաննոս վարդապետ մահտեսի Իսկեան-
դարեան։

Ռափայէլ վարդապետ Շիրակացի շուշ-
տակ, և գործակից նորա Պետրոս Արե-
գայ Այվազեան Ախալցխեցի. յաւուրս
սորա Հրամանաւ Սրբազնակատար Կա-
թուղիկոսին ամենայն Հայոց Տ. Տ.
Գէորգայ Դ. կառուցաւ ի նորոյ հոյա-
կապ Վանական դպրոց մի, յորմէ վանքն
զուրկ էր ի սկզբանէ անտի. հանին մե-

Ծաւ աշխատութեամբ զաուս, շինեցին
զմի ջրաղաց ի Գողթ գիւղ։

ԿԱՂՈՒԱԾՔ ԱՅՐԻ ՎԱՆԱՑ ՍՐԲՈՑՆ ԳԵՂԱՐԴԱՑ
ՆՈՒԻՐԵԱԼՔ ԻԲԱՐԵՊԱՇՏԻՑ·

է Ռ—Ի Հայոց

Իշխանաց իշխանքն Զաքարէ սպասալարըն և Աթաբէկ Իվանէն վերստին դարձուցանեն զջուրն Ամառնամատակի ի սուրբ ուխտն Այրի վանաց։ ՌԽԹ.

Ստեփաննոս Կուտկեանց տայ ի դուռն սուրբ ուխտին Այրիվանաց զհայրենի հողն զԲարափողոյն։ ՌԻԶ

Մեծանուն բարեպաշտ իշխանն Պռոշ գանձագլին աննէ ի տերանց աշխարհի սուրբ ուխտս Այրի վանից լերամբ և դաշտաւ և ամենայն կազմութեամբ, և տայ յիշատակ ի դուռն սուրբ ուխտին Այրի վանաց զԶողջարերդն և զԽերդաղն և ըզ-Գերեզմանոց։ ՉԼԲ

Պարոն Ջուռէ և պարոն Արղաբէկն տան ի դուռն սրբոյն Գեղարդայ զհայրենի ժառանգութիւն իւրեանց զայգին և ըզ-պարտէզն։ ՌԲ

Անխտաշխանք.

Իշխանաց իշխանն տիեզերակալ Աթաբէկ Իվանէն տայ սուրբ Կաթուղիկէիս զգիւղն Բերդաղ իւրև լուսացու։

Մխիթար որդի Գրիգորի տայ ի դուռն սրբոյ Կաթուղիկէիս զՎաժանն փոքր Զիթենհանքի:

Խաչատուր անուն ոք տայ սուրբ ուխտիս զայգի մի:

Սառմ և ամուսին իւր Արքա ընծային Աճրի վանացն զտունն իւրեանց որ կՃրևւանն:

Ուսլուն անուն ոք միաբանի սուրբ ուխտիս և ի յիշատակ ծնողացն տայ զԳառնոյ խոպանն:

Պարոն Բուրթէլն և ամուսին իւր Խամբէկն տան ի վախմ ի դուռն սրբոյն Գևորգայ զայգի մի և զմի պարտէզ:

Դանիէլ և եղբարքն և իւր ազգական Մխիթարն տան ի յիշատակ սուրբ ուխտիս զմի տուն որ ի Նորագաւիթ, զԳատկի ջրաղացն և զմի այգի:

Ուրբաթ Կաւատկեցի տայ զհող այգւոյ իւրոյ:

Զաքարէ բարեպաշտ ոք գնէ զԳատաւորի հողն զԽողայ խայտերն Արթզոյ ի Հասանայ և ընծայէ ի դուռն սուրբ Աստուածածնի:

## ՊԱՏՃԷՆՔ ՌՈՒՍԵՐԷՆ ԿԱԼՈՒԱԾԱԳՐՈՑ ԳԻՒՂՕՐԷԻՑ ԱՑՐԻՎԱՆՈՒՑ ՀԱՆԴԵՐՁ ՀԱՅ. ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՄԲ։

---

Лѣта тысяча восемь сотъ пятидѣсятаго февраля въ восьмой день Эриванской Губерніи житель города Эривани Губернскій Секретарь Яковъ Ивановъ сынъ Тиграновъ продалъ на основаніи журнальнаго постановленія Кавказскаго Комитета отъ 26 Мая минувшаго 1849 года Высочайше утвержденнаго въ 5-ти день Іюня, Армянскону Кегартскому Монастырю доставшіеся мнѣ по купчей крѣпости совѣршенной въ Эриванскомъ Уѣздномъ Судѣ 15-го Октября 1848 года за № 92, три Ахчи Мулька земли изъ деревни Кохтъ, состоящей Эриванскаго Уѣзда въ Зангибасарскомъ Участкѣ, какова вся деревня Кохтъ граничится съ одной стороны землею принадлежащею Монастырю Кегарту, съ другой отъ деревни Башкарни нижнею общею дорогою и родникомъ называемымъ Машадъ Али Булагъ на противу горы Коша санкаръ, съ третьей отъ земли Деревни Али Мардана при роднымъ камнемъ именуемымъ Новгдашъ, а съ четвертой отъ земли принадлежащей дерев[illegible]ѣ Артизѣ цѣною за двѣсти семдесять семь рублей серебр[illegible]мъ. На предъ же сего выше означенныя три Ахчи Мулька земли изъ деревни Кохтъ никому иному мною не проданы, не заложены, и ни въ какихъ крѣпостяхъ не укрѣплены. А буде кто ни есть станетъ за оныя вступаться, то я и наслѣдники мои должны Армянскаго Монастыря Кегарта и Еремонаховъ его отъ того защищать и ни до какихъ убытковъ въ томъ не допущать, о написаніи въ сей купчей договорной цѣны безъ утайки отъ взысканія пошлинъ (360 ст):

5 Тома устава о пошлинахъ и 1164 и 1166 статьи 10 тома свода Гражданскихъ законовъ изданія 1842 года при семъ продавцу и Еремонаховъ Кегартскаго Монастыря Микаелу объявлены.

*Վերոգրեալ երեք ախչայ Գողթ գիւղից վաճառեցի վանացն սըրբոյն Գեղարդայ 277 մանէթ արծաթոյ և այսքան դրամն ի Վանահօրէ*

որոյն Գեղարդայ Միքայէլ վարդապետէ լիովին ստացայ, որում և ըստ ամենայնի վերոգրելոցն ստորագրեմ Գուբերնսկի Սեկրետար

Յակոբ Տիգրանեանց

У сей купчей свидѣтелями были,

Վկայեմ Երևանցի Օհաննէս Եղիայեանց

Վկայեմ Փիլիպոսն Մ. Աղամալեանց.

Купчую сію писалъ писецъ Карапетъ Теръ-Антоновъ, 1850 года февраля 8 дня купчую сію совершить по законамъ

Секретарь Стрельдицкій.

1850 года февраля 8 дня сія купчая у крѣпостныхъ дѣлъ Эриванскаго Губернскаго Суда на гербовомъ листѣ 90 копѣечнаго достоинства писана и въ книгу подлинникомъ подъ № 10 записана съ немъ четырехъ процентный пошлинъ 11 р. 8 коп. Актовымъ 3 руб. па припечатаніе въ Сенатскихъ вѣдомостяхъ объявленіи 3 р. и на пересылку оныхъ 3 копѣйки а всего семнадцать рублей одинадцатъ копѣекъ сер. взыскалъ и купчую сію совѣршивъ выдалъ надсмотрщикъ Макашевъ.

## Թարգմանութիւն:

1850 ամի 8ն փետրվարի բնակիչ Երևան քաղաքի Երևանայ նահանգի Նահանգական Քարտուղար (Губернскій Секретарь) Յակոբ Յովհաննիսեան Տիգրանեանց վաճառեցի ըստ օրագրական կարգաւորութեան Կովկասեան Կոմիտետի 26 Մայիսի 1849 ամի, բարձրագոյն հաստատութեամբ 5ն Յունիսի Հայոց վանուցն Գեղարդայ, ինձ հասեալն կալուածագրով հաստատածն և վերջաւորածն Երևանայ Գաւառական Դատարանումը, 15 Հոկտեմբերի 1848 ամի № 92, երեք աժնայ մուլք Գողթ գիւղից՝ որ գտանի Երևանայ գաւառի Զանգիբասարի գաւառակումը: Ամբողջ Գողթ գիւղն կասհմանափակի մէկ կողմանէ Գեղարդայ Վանքապատկան հողերովն, միւս կողմանէ Բաշ-

գետանի գիւղի ներքին համարակաց ճանապարհաւն և աղբերաւն՝ որ կկոչուի Մաշատ-ալի-բուլաղ, հանդէպ լերին Կոշասանգեառ կոչեցելոյ, երրորդ կողմանէ հողերիցըն Ալիմարդան գիւղի մօտ ջրանցաքարն՝ որ կկոչուի Նօվռաշ, չորրորդ կողմանէ Արթիզ գիւղի պատկանեալ հողերից, գնահատութեամբ 277 մանէթ արծաթոյ. նախ քան զայս, վերոյիշեալ երեք ախճայ հողն Գօղթ գիւղի ոչ ոքի չեմ ծախած, ոչ գրաւ դրած և ոչ մի կալուածագրով հաստատած. իսկ եթէ մէկն կեսի միջամուխ լինել այդ հողերին, այն ժամանակն ես և իմ ժառանգներն պարտական են պաշտպանել՝ ինչպէս Հայոց Գեղարդայ վանքն՝ նմանապէս և վարդապետներն, և չթողտալ այդ հանգամանքներումը վնաս կրեն նոքա: Այն կալուածագրի մէջ պայմանադրած գինն նշանակել առանց թագցնելու, մաքս պահանջելու համար (360 յօդ.):

5երորդ հատորում մաքսի կանոնադրութեան 1164, և 1166 յօդուածներն, 10 հատոր քաղաքական օրինաց, տպեալն 1842 ամի, սորանով՝ վաճառողին և Գեղարդայ վանուց վանահայր Միքայէլ վարդապետին յայտնուած են:

Վերոյ գրեալ երեք ախճայ Գօղթ գիւղից վաճառեցի վանաց սրբոյն Գեղարդայ 277 մանէթ արծաթոյ, և այսքան դրամն ի վանահօրէ սրբոյն Գեղարդայ Միքայէլ վարդապետէ լիովին ստացայ, որում և ըստ անձնային վերոյգրելոցն ստորագրեմ,

Գուբեռնսկի Սեկրետար Յօհան Տէգրանեանց:

Այս կալուածագրոյ վկայքն էին,

Վկայեմ Յովհաննէս Եղիազարեանց

Վկայեմ Գէորգօն Մ. Աղամալեանց

Կալուածագիրս այս գրեաց

Գրագիր Կարապետ տէր Անտօնեան:

**1850 ամի 8ն փետրվարի կալուածագիրս այսվերջաւորել ըստ օրինի**

Սեկրետար Աբելբեգեան։

1850 ամի 8ն փետրվարի սոյն կալուածագիրն կալուածագրական գործերում Երևանայ Նահանգական Դատարանի գրուած է 90 կոպեկանոց արժողութեամբ դրուագաւոր թղթոյ վերայ, և բնագրով գրքումըընդ համարաւ 10ն հաշուած է 4% մաքս՝ 11 մանէթ 8 կոպէկ, Ակտի համար 3 մանէթ, Սենատսկի Վեդոմոստումը յայտարարութիւն տպելոյ համար 3 մանէթ, նորա ուղարկելու համար երեք կոպէկ, ընդ ամենն 17 մանէթ 11 կոպէկ պահանջեաց, և այս կալուածագիրն վերջաւորելով յանձնեաց։

Վերահսկեցող Մաղաշեան։

ВОДНЫЙ ЛИСТЪ.

Тысяча восемь сотъ пяти десятаго года мая пятаго дня, Управляющій Зангибасарскимъ участкомъ Поручикъ Амирхановъ, согласно указу Эриванскаго Губернаго Суда отъ Февраля 1850 года за № 387- мъ ввелъ во владѣніе Зангибасарскаго участка Кегвартскій Монастырь Купленнымъ онымъ отъ Эриванскаго жителя Губернскаго Секретаря Якова Тигранова Тремя Ахчами мулька земли изъ деревни Кохтъ по купчей крѣпости совершенной въ ономъ Судѣ 8 Февраля сего года За № 10 - мъ. За двѣсти семдесять семь рублей серебромъ цѣною; каковая земля граничится: съ Востока; съ одной стороны землею принадлежащею Монастырю Кегарту; съ другой отъ Деревни Башгарни. нижнею общею дорогою и родникомъ называемымъ Машадъ Али булагъ, напротиву горы Коша сангаръ, съ третьей отъ деревни Али Марданъ природнымъ камнемъ именуемымъ новгдашъ, а съ четвертой отъ земли принадлежащей Деревни Артызъ канавою подъ названіемъ Аноджъ – архъ, и при передачѣ сего имѣнія во владѣніе Кегвартскаго Монастыря притензій состороны жителей объ-

явлено не было, въ Удостоверніе чего и постанавленъ сей Актъ за подписьею моею и находившихся при семъ понятыхъ старонних людей съ видачею Копію съ сего вводнаго листа Кегвартскому Монастырю. Означеннымъ Имѣніемъ вовладѣніе ввелъ Управляющій Зангибасарскимъ участковымъ управленіемъ Завѣдующій Зангибасарскимъ участкомъ Капитанъ № . . . .

При вводѣ во владѣніе находились жители ниже поимѣнованныхъ. Селеніи Вашкарнинскй.

Старшина Вартанъ Кеворковъ.
Авакъ Папановъ.
Алагверди Абраамовъ.
Минасъ Сакоевъ.
Вартанъ Мануковъ.
Ованесъ Мануковъ.
Сахо Кеворковъ.
Манукъ Сахоевъ.
Сахо Оганесовъ.

*Որովհետև գրեալ անձինքն գիր չի գիտելով՝ ի տեղի նոցա ստորագրեցի* Տէր Յօհաննէս քահանայ Գասպարեան։

Жители Деревни Артизъ, Кохтъ и Али Марданъ.
Баба Касумъ оглы.
Абасъ Али Маммадъ оглы.
Салманъ Сулейманъ оглы.
Ахверды Али оглы.
Абдулла Маммадъ оглы,
Каграманъ Имамверди оглы.
Мамадъ Сулейманъ оглы.
Имамъ верди Сулейманъ оглы.
Мамадъ ханъ Сулейманъ оглы.
Гусейнъ ханъ Наби оглы.
Мирза Калбалай Абдулла оглы.
Гасанъ Маилъ оглы.

Продовецъ Գանձակեցի Մելքիսեդ Յակոբջան Տէրտէրեան։

Покупщикъ Միքայէլ վարդապետ Յարութիւնեան վանահայր սուրբ Գեղարդայ։

1852 года, Декабря 22 дня, что сія копія съ вводнаго листа суть съ подлиннаго токоваго листа дѣйствительно, въ томъ подписомъ моимъ и прилаженіемъ казенной печати удостовѣрно.

Начальникъ Зангибасарскаго Участка Маркаровъ.

| Տեղի կնքոյ |
|---|

## Յանձնողական Թերթ։

1850 ամի 5ն Մարտի, կառավարիչ Զանգիբասարու գաւառի Հարիւրապետ (поручикъ) Ամիրխանեանց համաձայն հրամանի Նահանգական Դատարանի Երևանայ, փետ. 1850 ամի № 387, մտցրեց տիրապետութեան ներքոյ Զանգիբասարու գաւառի վանքն Գեղարդայ իւրանով գնածն Երևանայ բնակիչ նահանգական քարտուղար (Губернскій Секретарь) Տիգրանեանց Յակոբէն երեք ախճայ հող Գողթ գիւղից, կալուածագիրն վերջաւորած է նոյն Դատարանումը 8ն փետ. սոյն ամի № 10, գնահատութեամբ 277 րուբլի արծաթոյ, որպիսի կալուածքն կսահմանափակին յարևելից մէկ կողմանէ Գեղարդայ վանուց հողերովն, միւս կողմանէ Բաշգեառնի գիւղից ներքին հասարակաց ճանապարհաւ, և աղբերաւն՝ որ կոչի Մաշատ-ալի-Բուլաղ, երրորդ կողմանէ Ալիմարդան գիւղից մօտ ջրանցաքարն՝ որ կոչի Նովռաշ, չորրորդ կողմանէ Արթիզ գիւղի պատկանեալ հողերից և ջրանցովն՝ որ կոչի Անաջ-արխ. սոյն կալուածոց յանձնողութեան ժամանակն ի տիրապետութիւն վանուց Գեղարդայ, գիւղօրէից բնակչաց կողմից չեղաւ պահանջողութիւն, ի հաւաստութեան որոյ կայացուցաւ սոյն արձանագիրն (Актъ) ստորագրութեամբ իմով և ներկայ գտանեցեալ ի մէնջ ընտրեալ մասնաւոր անձանց, ընդ նմին տուաւ և պատճէնն սոյն

յանձնողական թերթի վանուցն Գևորգայ: Նշանակեալ կոչուածոց տիրապետութիւնն յանձնեաց, կառավարիչ Զանգիբասարու գաւառական կառավարութեան և տեսուչ Զանգիբասարու գաւառի Կապիտան Կ. . .

Յանձնողութեան ժամանակն կգտանէին ներքոյ անուանեալ բնակիչքն:

Բաշգառնի գիւղ.

Տանուտէր Վարդան Գէորգեան
Յակոբ Պապանեան
Ալահվերդի Աբրահամեան
Մինաս Սահօյեան
Վարդան Մանուկեան
Յովհաննէս Մանուկեան
Սահօ Գէորգեան
Մանուկ Սահօյեան
Սահօյ Յովհաննէսեան

Որովհետև վերոյգրեալ անձինքն գիր չգիտելով ի տեղի նոցա ստորագրեցի:

Տէր Յովհաննէս Մէրայօ Գասպարեան:

Բնակիչք գիւղօրէից Արթզոյ, Գողթայ և Ալիմարդանայ

Բաքա Գասէմ-օղլի
Աքպար-ալի Մաշադ-օղլի
Սալման Սուլէյման-օղլի
Ջաֆարվերդի Ալի-օղլի
Աբդուլլայ Մաշադ-օղլի
Գահրաման Իմամվերդի-օղլի
Մաշադ Սուլէյման-օղլի
Իմամվերդի Սուլէյման-օղլի
Մամադ-խան Սուլէյման-օղլի
Ջէբրայէլ-խան Նաջէֆ-օղլի

Մերապ-քալֆալայ Եփրեմալայ-օղլի
Հասան Մայիլ-օղլի։

Վաճառող Գուբեռնիսկի Սեկրետար Յակոբջան Տէֆրա-նեանց։

Գնող Միքայէլ վարդապետ Յարութիւնեան Վանահայր սուրբ Գեղարդայ։

**1852** *ամի* **22** *Դեկ. թէ սոյն պատճէնն յաձնողական թերթի ընդ իսկականին ուղիղ է, վասն այն իմով ստորա-գրութեամբ և դրոշմամբ արքունական կնքոյ վաւերացու-ցանեմ*

Գաւառապետ Զանգեզուրայ գաւառի Մարգա-րեանց։

| Տեղի կնքոյ |
|---|

Лѣта тысяча восемъ сотъ шестьдесять восьмаго Января въ двадцатый день. Я Эриванской Губерніи житель гор. Эривани Коллежскій Регистраторъ Степанъ Григорьевъ Егіазаровъ по довѣренности поручика 1-го Кавказскаго Сапернаго ЕГО ИМПЕРАТОРСКАГО ВЫСОЧЕСТВА ВЕЛИКАГО КНЯЗЯ НИКОЛАЯ НИКОЛАЕВИЧА старшаго Баталіона Василія Езнакіева Камсаракана, засвидѣтельствованной въ Тифлисской Палатѣ уголовнаго и гражданскаго Суда, отъ 16 Марта 1866 г. подъ № 190 съ разрѣшенія совѣта Намѣстника Кавказскаго изясненнаго въ выпискѣ журнала его, состоявшагося 21 Сентября 1867 г. № 200 препровожденной при отношеніи Эчміадзинскаго Армяно—Григорянскаго Сѵнода отъ 20 Декабря того же года за № 1911 продалъ повѣренному Сѵнода Архимандриту Михаилу въ пользу Кегартскаго Монастыря доставшіяся вѣрителю моему отъ умершаго отца его три ахчи и семь съ половиною стилей земли дер. Меграбъ-кюрдъ-кендъ и танабашъ, состоящей въ Эриванскомъ Уѣздѣ цѣною за пять тысячъ рублей сер. На предъ же сей купчей крѣпости, вышеозначенныя три ахчи и семь съ половиною стилей земли

изъ дер. Меграбъ кюрдъ кендъ ни кому иному вѣрителемъ моимъ не проданы, не заложены, и ни въ какихъ крѣпостяхъ не укрѣплены, буде кто не есть станетъ за оныя вступаться то вѣритѣль мой и наслѣдники его должны защищать монастырь отъ того и ни до какихъ убытковъ въ томъ не допускать. При этомъ объявлена обоимъ повѣреннымъ продавца и покупщика отвѣтственность за утайку настоящей цѣны имѣнія 1 ст. 396 т, V: 1 и за продажу и куплю чужой собственности 1 ст:1407 и 4709 т. X. Ч. I: 1 дѣйствительно я повѣренный Поручика Василія Езнакьева Камсаракана, Коллежскій Регистраторъ Степанъ Егіазаровъ продалъ повѣренному Эчміадзинскаго Сѵнода Архимандриту Михаилу въ пользу Кегвартскаго Монастыря выше означенныя три ахчи и семъ съ половиною стилей земли дер. Меграбъ – курдъ – кендъ за пять тысячь рублей сс-реб. которыя сполна получилъ. Въ чемъ и подписиваюсь, Коллежскій Регистраторъ Степанъ Егіазаровъ,

Свидѣтелями были

Эриванскій житель Михаилъ Хечатуровъ

Губернскій секретарь меликъ Акоповъ

Купчую сію писалъ писецъ Артемъ Теръ Микиртичевъ. 1868 года Января 20 дня. купчую совершить по законамъ, Секретарь Антернацкій.

1868 года Января 20 дня, Купчая сія у крѣпостныхъ дѣлъ Эриванскаго Губернскаго Суда на гербовомъ тринадцати рублевомъ листѣ, писана и въ книгу подлинникомъ подъ № 2. записана, слѣдующіе съ него отъ акта 3 руб. за бумагу на производство переписки 2 руб. 40 коп. 4⁰|₀ пошлинъ съ суммы 5000 *руб.* 200 руб. и за объявленіе о переходѣ имѣніи 3 руб. всего *двѣсти восемъ руб. сорокъ коп.* покупщикомъ Архимандритомъ Михаиломъ внесены въ Эриванское уѣздное Казначейство (квитанція отъ 18 Января 1868 года № 74,); Купчую же совершивъ выдалъ и. д. Надсмотрщика крѣпостныхъ дѣлъ А. Огановъ.

1868 года Апрѣля 13 го дня. по сей купчей крѣпости введенъ вовладѣніе повѣрѣный Кегвартскаго Монастыря Архимандритъ Михаилъ купленными у повѣреннаго поручика Василія Езнакова Камсаракана Эриванскаго жителя коллежскаго регистратора Степана Егіа-

зарова въ дер. Мεграбѣ-кюрдѣ-кендѣ тремя ахчами и семью съ половиною землею, въ пользу Кегвартскаго Монастыря.

Судебный Приставъ Эриванскаго уѣзднаго Маровaго отдѣла А. Теръ-Барсеговъ.

1868 ամի 29ն Յունվարի, ես Երևանայ նահանգի բնակիչ Երևան քաղաքի Համարակալ Ատենի (Коллежскій Регистраторъ) Ստեփաննոս Գրիգորեան Եղիազարեանց ըստ հաւատարմական թղթոյ հարիւրապետի (поручикъ) Կովկասեան առաջնակարգ Սապերնի գնդի նորին կայսերական Բարձրութեան մեծ Իշխանի Նիկոլայ Նիկոլայեւչի մեծի, Բարսղի Եղնակեան Կամսարականեանց, վաւերացուցածն Տփխիսու պալատումը քաղաքական և քրրէական Դատարանի 16ն Մարտի 1866 ամի № 190, ըստ վճռահատութեան Խորհրդարանի Կովկասեան փոխարքայի, բացատրուածն նորա օրագրի արտագրութեան միջումը՝ որ կայացած է 21ն Սեպ. 1867 ամի № 200, առաքուած ընդ հաղորդագրութեան Սինոդին սրբոյ Էջմիածնի 20ն Դեկ. 1767 ամի № 1911, վաճառեցի հաւատացեալ գործակալին Սինոդի Միքայէլ վարդապետի յօգուտ վանուցն Գեղարդայ Ճացեալն հաւատացողին իմոյ ի ժառանգութիւն հանգուցեալ հօրէն երեք ախճոյ 7½ սախլ հող Մէհրապ, Քիւրտքեանդ և Թաբարաշ գիւղերից, որ կգտնուի Երևանայ գաւառում, գնահատութեամբ 5000 րուբլոյ, նախ քան սոյն կալուածագիրն վերոյիշեալ երեք ախճոյ 7½ սախլ հողն Մէհրապլու և Քուրտքեանդ գիւղի հաւատացողն իմ ոչ ոքի չէ ծախել, չէ գրաւ դրել և ոչ մի կալուածագրով հաստատած. իսկ եթէ մէկն սկսի միջամուխ լինել այդ հողերին, այն ժամանակն հաւատացողն իմ և նորա ժառանգներն պէտք է պաշտպանեն վանքն և չթողլ տան ոչ մի վնաս հասցնել. ըստ այսմ յայտնուած է վաճա-

ռողի և գնողի երկու հաւատարիմ անձանց պատասխա-նատուութիւնն՝ եթէ նոքա թագցնեն կալուածքի իսկա-կան գինն (յօդ. 396 հատոր 5 երորդ) ծախողու և գնողու այլոց սեփհականութիւնն (յօդ. 1407 և 4709, հատոր 10, մասն 1)։

Նոյնպէս ես հաւատացեալ գործակալս Պարուչեկ Բարսղի Եզնակեան Կամսարականեանց Կօլլեժսկի Ռե-գիստրատոր Ստեփաննոս Եղիազարեանցս վաճառեցի Եջմիածնի Սինոդի հաւատացեալ գործակալին Միքա-յէլ վարդապետին ի սեփհականութիւն վանուցն Գե-ղարդայ վերոյիշեալ երեք անձայ 7½ սախ հողն Մէհ-րապ, Փիւրոքեանց գիւղի, 5000 րուբլոյ, զոր լրիւ ստա-ցայ, առ որ ստորագրեմ

Կօլլէժսկի րեգիստրատոր Ստեփաննոս Եղիազարեանց։

Վկայք էին Երևանայ բնակիչ

Միքայէլ Խաչատրեան

Գուբերնսկի Սեկրետար Մելիք Յակոբեան։

Կալուածագիրն գրեց

Գրասէր Արտեմ Տէր Մկրտչեանց։

1868 ամի 20'-ն Յունվարի կալուածագիրն վերջաւո-րեալ ըստ օրինի,

Սեկրետար Ընդէրնոյէկ։

1868 ամի 20ն Յունվարի սոյն կալուածագիրն կա-լուածագրական գործերում Երևանայ նահանգական Դատարանի դրոշմաւոր 13 մանէթանոց թերթի վերայ գրուած է, և ընագրով գրքի մէջ ընդ համարաւ 2, և սոյն թղթոյ պահանջելի 3 մանէթ, սոյն գործոյ գրա-գրութեանց համար 2 մանէթ 40 կոպէկ, 4% տոկոսեաց մաքս 5000 րուբլի գումարից 200 մանէթ, յանձնողա-կան Յայտարարութեան համար 3 մանէթ, ընդ ամենն

208 մանէթ 40 կոպէկ կալուածք գնող Միքայէլ վարդապետն ներկայացոյց Երեւանայ գաւառական գանձարանին ապահովագրերն, 18ն Յունվարի 1868 ամի № 74։ Այն կալուածագիրն վերջաւորելով յանձնեցաւ պաշտօնակատարին կալուածագրական գործոց վերահայեցողի Ա. Օհանեանց։

1868 ամի 13ն Ապրիլի այն կալուածագրոյ զօրութեան համաձայն մտցրեց իւր տիրապետութեան ներքոյ հաւատացեալ գործակալն Գեղարդայ վանից Միքայէլ վարդապետն՝ որ գնուած էր Պարուչիկ Բարսղի Եղնակեան Կամսարականեանց հաւատացեալ գործակալ Երեւանայ բնակիչ Կօլլեժսկի Ռեգիստրատոր Ստեփաննոս Եղիազարեանցէ Մէհրապ, Քեւրօղլեանց գիւղում երեք ոխճայ 7 1/2 Սօխ հող յօգուտ Գեղարդայ վանից։

Ստորագրեց Պրիստաւ Երեւանայ գաւառական Ատենաւորաց մասին Ա. Տէր Բարսեղով։

ВОДНЫЙ ЛИСТЪ.

Тысяча восемьсотъ шестьдесять восмаго года Апрѣля тринадьцатаго дня, вслѣдствіе Исполнительнаго листа Мироваго Судьи Эриванскаго Отдѣла, отъ 11го. Апрѣля за № 325, Судебный Приставъ того же отдѣла Теръ Барсеговъ, при ниже подписавшихся понятыхъ сосѣдныхъ деревень при покупщикѣ и за отсудствомъ продавца Егіазарова, ввелъ вовладѣніе повѣреннаго Кегартскаго Монастыря, Архимандрита Михаила, купленной у повѣреннаго Поручика Кавказскаго Саперная Его Императорскаго Высочества Великаго Князя Никалай Никалаевича старшаго баталіона Василія Езнакова Камисаракана, Эриванскаго жителя коллежскаго регистратора Степана Егіазарова. По купчей] крепости засвидѣтельствованной въ Тифлисской Палатѣ Уголовнаго и Гражданскаго Суда отъ 16-го Марта 1866 года за № 190, за пять тысячъ рублей серебромъ, въ

пользу означеннаго Монастыря въ дер. Меграбѣ Кюрдѣ Кендѣ, и Танабашъ трехъ Ахчи и семи съ половиною стилей земли, границы; Меграбъ кюрдъ кендъ слѣдующіе; съ востока канава дер. Двинъ, съ запада дер. Ардашаръ, съ юга хлѣбпахатная земли дер. Даргалу и съ севера мукомольная Мельница, Степана, Осипа и Аванеса Теръ-Степанянца при вводѣ вовладѣніи изъ сосѣдныхъ деревень, или кѣмъ либо другимъ на какой притензіи не предявлено. Въ чемъ составленъ сей вводный листъ за общимъ нашимъ подписомъ понятые жители деревень.

Деревни Ардашаръ

Давидъ Киракосовъ.
Мурадъ Саркисовъ.
Меликъ Исраелъ Меликъ Погосовъ.
Мосесъ мугдуси Петросовъ.
Како Акоповъ.
Давидъ Саркисовъ.

Торпахъ Гала,

Старшина Мустафа Али оглы
Судья Али Гусейнъ оглы.

Дивинъ кюрдъ кендъ.

Старшина Соломонъ Худавердовъ.
Кеворкъ Сааковъ.
Амирханъ Кочоевъ.
Кеворкъ Крикоровъ
Ханкельды Манасаровъ

Дер. Дюкюнъ.

Старшина Саакъ Теръ-Акоповъ.
Мугдуси Бадалъ Бабаовъ.
Судья Авакъ мугдуси Аслановъ
Мелкунъ Фаносовъ

Дер. Зограблу.

Старшина Бадалъ Бадаловъ.
Худанъ Давидовъ

Гарибъ Таривердовъ

Дер. Агджа Гшлагъ

Енгибаръ Микиртичевъ.

Исаджанъ Меграбовъ

Манасаръ Абраамовъ

Архимандритъ Михаилъ.

Подлиный подписалъ Судебный Приставъ Эриванскаго Уѣзднаго Мироваго отдѣла Теръ-Барсеговъ.

Съ Подлинномъ Вѣрно: Судебный Приставъ Эриванскаго Уѣзднаго Мироваго отдѣла Коллежскій Секретарь Теръ-Барсеговъ.

### Յանձնողական Թերթն։

Ի 1868 ամի 13ն Ապրիլի ըստ զօրութեան կատարողական թերթի հաշտարար դատաւորի Երևանայ մասին 11ն Սեպ. № 325, Ատեանի պրիստաւն նոյն մասին Տէր Բարսեղեանն ի ներկայութեան ներքոյ ստորագրող վկայից մերձաւոր գիւղօրէից, ի ներկայութեան գնողի և ի բացակայութեան վաճառող Եղիազարեանցի եմոյծ ի տիրապետութիւն հաւատացեալ գործակալի Գեղարդայ վանից Միքայէլ վարդապետի գնեալն ի հաւատացեալ գործակալէ Պօղոսէն Կօլկասեան Սապերնի գնդի ՝Նորին Կայսերական Բարձրութեան Մեծ Իշխանին ՝Նիկօլայ ՝Նիկօլայևչի Մեծի, Բարսղի Եղնակեան Կամսարականեանց, այնու կալուածագրով՝ զոր վաւերացուցեալ է ի Պալատի Տփխիսու քաղաքական և քրէական Դատարանի ի 16ն Մարտի 1866 ամի № 190, 5000 արծաթ րուբլեայ յօգուտ վերոյիշեալ վանիցն, որ գտանի ի Մէհրապ, Փխրուքեանց և Թարարաշ գիւղօրայս երեք աջոյ 7 $\frac{1}{2}$ Սոխլ հող. Մէհրապ Փխրուքեանց գիւղի սահմանքըն են հետևեալքն, յարևելից կուսէ՝ ջրանցք Դուլին գեղջ, յարևմտից՝ գիւղն Արտաշար, ի հարաւոյ՝ վարե-

լահողք Դարղալու գիւղի, ի հիւսիսոյ ջրաղացն Սանփան-նոսի Յովսէփայ և Յովհաննիսի տէր Սանփաննոսեանց. ի յանձնելն ի տիրապետութիւն ոչ ոք ի մերձակայ գիւղօրէից չյայտնեաց զորպիսի և իցէ պահանջողութիւնս (претензій) · վասն որոյ կազմեցաւ սոյն յանձնողական թերթն մեր ընդհանուրի ստորագրութեամբ բնակչաց յիշադայ գիւղօրէից։

Երաշար գիւղ·

Դաւէթ Կէրակոսեան
Մուրատ Սարգսեան
Մէլքէ Խուրշէլ Մէլքէ Պօղոսեան
Մովսէս Մահդեսէ Պետրոսեան
Կաքօ Յակոբեան
Դաւէթ Սարգսեան

Թօրլաղ գիւղ·

Տանուտէր Մուստաֆայ Ալի օղլի
Դափաոր Ալի Հուսէին օղլի

Դուլին Թիւրքեանց·

Տանուտէր Սողոմոն Խուդավէրդեան
Գէորգ Սահակեան
Աֆրիկան Թօղօյեան
Գէորգ Գրիգորեան
Խանգէլալդի Մանասարեան

Դուկին գիւղ·

Տանուտէր Սահակ տէր Յակոբեան
Մահդեսի Բադալ Բաբօյեան
Տանուտէր Աւագ Մահդեսի Աւանեսեան
Մելքոն Փանոսեան

Զօհրապու գիւղ.

Տանուտէր Բաղալ Բաղալեան

Խաչօյ Դանիէլեան

Գարեգ Թարվերդեան

Աղջաղշալ գիւղ.

Ենգիբար Մկրտչեան

Խաչան Մեհրաբեան

Մանասար Աբրահամեան

Միքայէլ վարդապետ

*Յիսկականին ստորագրեաց Սուտեայնի պրիստաւ Նե-րեանց դաւառի հաշտարար մասին* Տէր Բարսեղեան

*Ընդ իսկականին ուղիղ է* Սոտեայնի Պրիստաւ Կօլլե-ժսկի Սեկրետար Տէր Բարսեղեան։



## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ.

(1) Այրի վանք. մտադրութեամբ կարդալով Դարասխանակերտցի Յովհաննէս Զ. Հոգեշնորհ Կաթուղիկոսի գեղեցիկ պատմութիւնն, կհանդիպինք այս անուն վանուց, որ կնշանակէ ամբողջ քարից փորուած վանք կամ եկեղեցի, որոյ համար պատմաբանն կասէ լինել տեղի կացրդի սրբոյն Իսահակայ Պարթեւի մեծ Հայրապետին մերոյ այսպիսի հատուած յառաջ բերելով. ‚‚Այսպէս ապա ‚‚ելեալ ի վանաց անտի Այրից ի կացրդից սրբոյն Իսահակայ, որ ի ‚‚ծործորս լերին Գեղայ որ ի ձորակի միջի՝ դէպ ուղիղ գնացաք և ‚‚ելաք ի վերին վանս ուր կային անասնոցն էին, և անտի չո‚‚ւեալ գնացաք ի միայնացելոցն կուսակրօնից միայնարանս որ ի Սե‚‚ւան կղզւոջ‚‚. տես Մոսկուա, երես 181 ..... Եւ ինչպէս Սիսական աշխարհի պատմագիր Ստեփաննոս Եպիսկոպոսն Օրբէլեանց իւր պատմագրութեան մէջ գլ. ԼԶ. կյիշէ, նախ քան սոյն Դարասխանակերտցին, 835 Փրկչական թուին Յովհաննէս Ե. Կաթուղիկոսն Ովայեցի որ ի Կոտայս, մինչ զինքն կուզէին աքսորել կամովին թողնելով Կաթողիկոսութիւնն և միայնիկ կբնակէ եղել Այրի վանքն. Նմանապէս Հայրն Շահխաթունեանց Յովհաննէս Եպիսկոպոսն իւր Ստորագրութեան գրքուկի մէջ խօսելով մենաստանիս վրայօք, նա ես Թուականաց և ժամանակաց զգալի տարբերութիւնքն տեսնելով՝ կարծիք կյայտնէ իբրու թէ Տաճարի ընդարձակ ժամատան միջի հիւսիսային կողման դէպ արեւելք գտնուած միմեանց մէջ փոխափորած եկեղեցիքն լինել իսկապէս նախկին շինուածք, այսպիսի համոզմամբ իբրու թէ տաճարն չունելով արձանագիր յիշատակութեան թէ ո՞րից է աշխատասիրուած և ի՞նչ ժամանակի, գուցէ սոքա լինին հնագոյններն և սոցա անուամբ կոչուած լինի ‚‚Այրի վանք‚‚. Բայց այս կարծիքն երբէք չէ կարելի հաւանական համարել, վասն զի տաճարաց փոխափորութիւնքն և շինուածքն իւրեանց իսպառ նորութիւններովն յետագայ ժամանակի գործ լինելու յայտնի վկայք են՝ նա մանաւանդ կայ այս մասին ստոյգ և հաւատարիմ ապացոյց

պայազատ Պռոշ իշխանի ազգական Դաւիթ վարդապետի տապանաքարն, որոյ վերայ գրուած է որ նա ինքն է վիմափորող նոյն Տաճարաց յանուն սուրբ Աստուածածնի ի ՌՃԾԳ Հայոց Թուին. որոյ մէջ զինքն ևս թաղած են, բայց վանահայրն սուրբ ուխտիս Ստեփաննոս վարդապետն մահտեսի Իսկանդարեան իբրև ի ցոյց անհասկացողութեանն նոյն տապանաքարն իւր բնական տեղէն շարժելով պիտոյացուցել է Գեղարդայ վանուց հարաւային դրան առաջի սալայատակին, որ երկար ժամանակ ոտից կոխան լինելով՝ վերծանութեան դժուարութիւն կտեսնուէր. Բայց մենք Թուականաց անհամաձայնութեան կնճիռն լուծել և պատմարանի վկայութիւնն՝ որ Այրի վանքն Իսահակ Պարթևի կացուրդն է եղեալ, կարող ենք վիրահստատել յետագայ հաւանական փաստերով. զոր օրինակ Նախ՝ Գեղարդայ վանուց պարսպի արևմտեան դռնէն դուրս գալով 50 քայլ հեռաւորութեամբ դէպ արևմտեան հիւսիսային կողմն կտեսնենք քարաժայռի երեսին միմեանց մէջ վիմափորած եկեղեցիք, որոց հօգեցատուր յիշատակաց արձանագրութեան և նոյն տեղոյ ժայռի երեսին վէմ Խաչերի վերայ Հայկական Թուականներն կարդալով՝ քան այժմեան վիմափոր եկեղեցիքն յառաջ կերևին մինչև 100 տարի, ուրեմն այժմեաններն չէին հնագոյններն և ոչ սոցա անուանքն՝ այլ առաջնոցն, կոչուած է Այրի Վանք. Նմանապէս վիմափոր շատ խըցկուներ կան անձնուրաց միանձնաքների համար. յորոց ոմանք կան այժմ կանգուն, բայց շատերն երբեմնակի զարհուրելի երկրաշարժութիւնից իբրև հատուած ժայռէն վայր թափուելով՝ այժմ հնութեան գերբուկներ կներկայանան հնասէր հայրենասիրաց առաջին. ահա ինչպէս այդպիսի յաւալի արկածից համար Հայր Միքայել Չամչեանն յառաջ կբերէ իւր պատմութեան մէջ յետագայ սխալ անցքերն ասելով. «Եղև ի սահմանս Երևանայ շարժ մեծ ի Թուին «ՌՃԻԸ, 1127, և մեռան ի քաղաքի անդ ութն հազար մարդիկ. և «կործանեցան եկեղեցիք վանացն Հաւուց Թառայ և Գեղարդայ և «Գետարգելի, և ի Գառնի փլաւ ամրականոցց հովանոցն Տրդատայ «Արքայի և խախտեցան բազումք ապարանք և Տաճարք որք շինեալ «էին ի վաղ ժամանակաց.» Հատոր Գ. 627—628. Սորա նման թէպէտ և այլ շատ երկրաշարժութիւններ կպատմին զանազան պատմագրութեանց և յիշատակարանաց մէջ՝ որոնք ժամանակ առ ժամանակ պատահած են մեծամեծ աւեր և կործանումն հասցնելով

մինչեւ 1840 թուականին, սակայն երկարօրէն գրել աւելորդ համարեցինք։ Երկրորդ վկայութիւնն՝ որ Այրի վանքն սրբոյն Խաչակայ մեծի կարգից տեղն է եղել, պատմարանի այս խօսքերովն կը հաստատենք. «Դէպ ուղիղ գնացաք և ելաք ի վերին վանս՝ ուր կայանք անանոց էին.» Վերին վանք, այժմեան հասարակաց գործածական անուամբ Կայանք ասուած ճանապարհի վերև դէպ արեւմտեան հիւսիս կընկնի Գեղարդայ վանքէն, թէպէտ այժմ՝ կանգուն չէ, սակայն գետնի վերայ տեսնուած թզաչափ նորա որմունքներն՝ նմանապէս Տաճարի փլատակութեան նշանաւոր քարերն արդարև կարի հնութեան ապացոյց են, որոց մասին երբէք չունինք տարակուսանք. իսկ «Կայանք անանոց» դէպ հարաւ ձորամէջն կընկնի։

2) Հուշակաւոր Մինասեանս այս երկրորդական անուամբ կոչի Վանք Գեղարդայ, երբեմն Աստուածամուխ Սուրբ Գեղարդն այս տեղ պահուելուն համար. այժմ ամբողջ Հայերն՝ առաւել Արարատեան բնակիչք թէ գրուածոց և թէ խօսակցութեանց մէջ, գրեթէ առաջին «Այրի վանք» կոչումն իսպառ մոռանալով, երկրորդ անունը հասարակաբար կյիշեն և կգործածեն. բայց թէ արինանիւկ տէգն ի՞նչ ժամանակ է տարած այն տեղ. և ի՞նչ պատճառաւ, չունիմ պատմութիւններից հաւաստի տեղեկութիւն. միայն այսպէս կկարծուի՝ թէ այն տեղ տանելու իսկական պատճառն եղած լինի ժամանակի խառնակութիւնն և խռովութիւնն, որ երկոտասան դարու մէջ արդարև Հայաստան աշխարհն՝ առաւել Արարատեան ցանկալի երկիրն հարաւային թշնամիներից ասպատակելով՝ միշտ վրդովման մէջ կգտնուէր, մինչև արևելեան Հայաստանում ծաղկեցան փառաւոր իշխանաց իշխանքն Զաքարէ Ամիր Սպասալարն և իւր հարազատ Աթաբէկ Իվանէն, որոց արիական քաջութեամբն Արարատեան աշխարհն գտնելով դիւրութիւն և հանգիստ խաղաղութեան՝ եղաւ հիմնարկութիւն հրաշափառ մեծի ուխտիս յանուն սրբոյ Գեղարդայ, և յառաջնորդութեան Բարսղի միայնաւորի Հայկական ՈԿԳ թուին եղաւ աւարտումն, ինչպէս կերևի արձանագրութիւնից։ Սոյն վանուցս մէջ՝ Աստուածակիր Սուրբ Գեղարդն մնացել է մինչև 419 տարի, (իսկ այժմ է ի սուրբ Էջմիածին). թողնելով գանազան պատմիչների վկայութիւններն, այդ մա-

որոյ մէջն ղետեղած է մասն Կենաց Փայտի փրկչական սուրբ Խաչի, ագուցած յարծաթի ոսկեզօծ ականակուռ Խաչի սպիտակ մեծագիր ական Ներքոյ. սոյն այս կենսատու հրաշագործ նշանս որբութեամբ կպահպանուի այժմ ի մեծ Մայրաքաղաքս Կաթուղիկէ սուրբ Էջմիածնի, և ունի յետուստ կուսէ ծանրակշիռ պահարանի յիշատակագիր յանուն Խաղբ իշխանին, զորոյ հարազատն անձամբ ընդօրինակելով կգնեմք այս տեղ:

‘‘Կամաւ կարողին Աստուծոյ ես Խաղբ որդի Հասա-
‘‘նայ որդո Պռոշա որդո Դժին Վասակա յաղթին Հաղ-
‘‘բակաց թէրէցէ հայրենի երկրիս իմոյ Շապոնեանց և այլ
‘‘յոլով գաւառաց ղարաբէգն և օգնական անելով զՔրիստո-
‘‘սոս և զսուրբ նշանս խոտակերաց, որով և նախնիքն իմ զօ-
‘‘րացան, եթոս կանգնել պահպանս անձին անձինց յիշատակ.
‘‘որ հանդիպիք սմա, զիս և զծնողսն իմ զՎրհասան և զԴ
‘‘թուծիծն և զհաւրեղբայրն իմ զՊապակ յաղաւթս յիշեցէք.
‘‘այլև զամենայն նախնեացն մեր և զազգատոհմն. սուրբ նշան
‘‘Տէրունական տէր Խաղբ լեր օգնական,,:

## Թիւ ՉԽԹ (749):

Նմանապէս սոյն մեծահաւատ բարեպաշտ իշխանին Պռոշայ աստուածազարդ տոհմէն էր Դաւիթ առաքինասէր վարդապետն՝ որ կյիշատակի Նաև յարձանագիրս մեծագին պահարանի Աստուածամուխ սուրբ Գեղարդայ, որ լինելով առաջնորդ և տեղապահ սուրբ ուխտին Գեղարդայ վանից, ինչպէս յայտնի կտեսնուի, սոյն երանելի այրս Աստուծոյ տնօրինելով իւր կեանքը համաձայն աւետարանական ճշմարիտ վարդապետութեանց՝ աշխատել է մինչև կենաց վերջ տքնել և վաստակել անձնուրացութեամբ յօգուտ և ի պայծառութիւն Աստուածային սուրբ տաճարաց զանազան և պէս պէս գեղեցիկ յիշատակօք, որպիսի աստուածահաճոյ յիշատակաց մին ևս է մի մեծագին պահարան կամարաձև ամբողջ արծաթապատ և ոսկեզօծ, որոյ մէջն է քառակուսի տախտակ Նոյեան տապանին, որոյ վերայ կայ մի խաչ արծաթ՝ ոսկեզօծ և ականակուռ. սոյն անգին դան-

ձը ամենազգուշութեամբ և սրբութեամբ կպահպանուի այժմ ի մեծ Մայրավանս Կաթուղիկէ սուրբ Էջմիածնի ի թիւս սրբոց նշխարաց. ունի յիշատակագիր յետուստ կուսէ արծաթի պահարանի յանուն յիշեալ Երանաշնորհ վարդապետին, զորոյ հարազատ անձամբ ընդօրինակելով կդնենք այս տեղ.

‹‹ Կամաւն Աստուծոյ ես Մղասամաճ և կծուն Գուհար
‹‹ անուրժան հաճեցաք ազգաւ Գուրջեցի տեղապահ վանիցս
‹‹ սուրբ Գէորգեայ շինել ետու և գոյնգոյն օրինաւորել
‹‹ զարդարեցի զզահարանս Նայեան տապանիս էրկագործ սուրբ
‹‹ տախտակէս, որ ազատ կոչէ սուրբ Յակոբ, յիշատակ ինձ և իմ
‹‹ ծնողացն և ամենայն արքաևաւոր Միքայէլոյ (.) և որ շատ
‹‹ և որ սակա արդեամբ ...ս այսմ պահարանիս Տէրն
‹‹ Քրիստոս հատուսցէ ի միասնգամ գալստեան ամէն. և որ
‹‹ ոք խափանեսցէ հանել (ի) վանիցս Գէորգայ կամ ծախել կամ գը-
‹‹ րաւ տնել ազգայնոց և այլոց յանէծս Աստենայ և Գուտա-
‹‹ նայ և խաչահանիցն անիցէ ...երէս այն յեւ գայցէ. ամէն։
‹‹ Ըստ... ...
‹‹ –էփէն ,,: Թվին ՇՂԶ (1147)։

3) Գառնի, սա սկիզբն կշինէ Գեղամ՝ որ է թոռն թոռան մերոյս Նահապետի քաջին Հայկայ և որդի Ամասիայի, և կանուանէ յիւր անուն Գեղամի. ապա նորոգելով զայն իւր Գառնիկ թոռն կանուանէ Գառնի. ինչպէս կյիշէ Դրասխանակերտցի Յովհաննէս Կաթուղիկոս պատմաբանն. ‹‹ Իսկ Գեղամայ դարձեալ անտի շինէ ‹‹ զգաստակերտն մեծ և գեղեցիկ զԳեղամի, որ յետոյ Գառնի ի Գառ- ‹‹նկայ անուան իւր, և ինքն մեռանի ,,. տես Երուսաղէմի. յերես 10.

4) Ազատ, սա է գետն գիւղաքաղաքին Գառնոյ. սոյն անունը կըյիշատակէ Յովհաննէս պատմաբան Կաթուղիկոսն իւր պատմագրութեան մէջ հետևեալ ասելիւ. որովհետև Վրաց ազգն սկսեալ սրբոյն Գրիգորի Լուսաւորչէն մինչև Մովսէս Կաթուղիկոսի ժամանակըն՝ որ է սահմանող Հայոց թուականին, իւրեանց եպիսկոպոսաց ձեռնադրութիւնն կառնէին Հայոց Պատրիարգէն և էին միշտ ընդ

իշխանութեամբ նորա, ուստի իւրեանց եպիսկոպոսն վաղճանած լինելով՝ ըստ խնդրանաց Վրաց ազգին, Մովսէս Կաթուղիկոսն ձեռնադրեց յատկապէս իւր վանաց երէց Կիւրոնն՝ Արքեպիսկոպոս Վրաց Նահանգին, Գուգարաց և Եգերացւոց, որպէս զի ևս առաւել սէր միաբանութիւն և հաւատարմութիւն ունենան առ Մայր Աթոռըն սրբոյն Գրիգորի. բայց զկնի վաղճանման Մովսէս Կաթուղիկոսին յաւուրս Աբրահամ Կաթուղիկոսի, այն է 37 թուականին Հայոց, այս Կիւրոն ցանկալով անկախ լինել Հայոց Պատրիարգէն և չկարողանալով չափ և սահման դնել իւր փառամոլ ախտակրութեան, ուստի նախնի սրբազան հարց և հայրապետաց ուղղափառ կարգ և կանոն ուրանալով հետևեցաւ . . . . . . . . . ժողովոյն Քաղկեդոնի. և այս իսկ եղաւ պատճառ բաժանման Վրաց ազգին ի Հայոց մինչև ցայսօր, ինչպէս վկայեն Ուխտանէս պատմաբան Եպիսկոպոսն Սեբաստացի գլ. , պատմագիրն Սիսական աշխարհի Ստեփաննոս Եպիսկոպոսն Օրբէլեանց գլ. ԾԱ, տիպ Մոսկուայ, և Կիրակոս վարդապետն Գանձակեցի ի շարս Կաթուղիկոսաց երես 25—26, տիպ Մոսկուայ. ուստի և Աբրահամ Կաթուղիկոսն երկիցս ժողով կազմելով ի դուին՝ այս Ազատ գետն սահման դրեց Հայոց և Վրաց մէջն այսպէս. «Իսկ մեծ Հայրապետն Աբրահամ «ըստ նախասաց բանին ի Դուին քաղաքի բնակէր ի Պարսից բաժ-«նին, զի գետն Ազատ զսահմանս բաժնիցն երկոցունց ընդ մէջ հա-«տանէր»։ Յովհ. Կաթուղիկոս պատմ. երես 50, տիպ Երուսաղէմի։

5) Պռոշ, սորան իբրև երկրորդական անուն Հասան ևս կոչէին, է որդի մեծին Վասակայ Խաչենոց հայկազն իշխանի յազգէն Խաղբակայ և կողմնակալ Վայոց ձորոյ, ունէր հնգեքին որդիք, Պապաք, Ամիրհասան, Վասակ, Մկդէմ և Էաչի բարեպաշտ իշխանս համեմատ իւր մեծայոյս հաւատոյն որ առ Քրիստոս. ինչպէս հոգևորին նկատմամբ Աստուածահաճոյ առաքինութեանց մէջ քան զբազումս յառաջադէմ հանդիսացաւ բարեպաշտութեան ճոխաշխարհիկ պանծալի յիշատակներով՝ որոնք այժմ և յայտն իւրեան և իւր աստուածազօր պայազատ տոհմին անկողոպտելի փառաց անմահ վկայք են, Նմանապէս աշխարհական զանազան պատերազմաց մէջ թողուց քաջութեան գովելի անուն, շատ անգամ ի սէր և ի փրկու-

թիւն Հայրենեաց իւր կեանքն մահուան գրաւ դնելով՝ արիական քաջութեամբ գովելի յաղթանակութեամբ իբրև անպարտելի ախոյեան և իբրև ամրութեան պարիսպ մեծաւ զարմացմամբ կհանդիսանայր թշնամեաց յանդուգն յարձակմանց դէմն. մանաւանդ ի ՉԷ թուին Հայոց՝ երբ Հայաստանի արևելեան մասին կիշխէր հզօր տէրութիւնն ազգին Նեռողաց (Ճենաց), սոյն Պառշ մեծազգի իշխանն յաջս Մանկու խանին՝ որ է որդի Չանկզ մեծ խանին Ճենաց, և Հուլաւու կողմնակալին շատ սիրելի լինելով, գնաց նոցա հետ պատերազմ հարաւային խուժադուժ ազգին վերայ, որուն Նայնգոս կանուանէին, և մինչև մեծ գետն Տիգրիս չափելով՝ սաստիկ պատերազմեցան տաճկաց հետ Բաղդատ քաղաքի վերայ, ո՛րտեղ իրաւի քաջարի իշխանս իւր Հայկական անպարտելի և յաղթող բազուկն ցոյց տուեց թշնամեացն, որոց վերայ առիւծաբար արձակուելով և թաւալգլոր անելով՝ դիակներէ կոյտեր կշատացնէր. նմանապէս ի ՉԹ թուին Հայոց Իլդանուխնի հետ՝ որ է Հուլաւու կողմնակալի տան մեծ վերակացուն, անց կենալով մինչև Եփրատ գետն՝ քաջութեամբ պատերազմեցան Մարտիրոսաց քաղաքի վերայ, զոր և առին. սոյն քաղաքս կոչի Մուֆարղին և կդտնուի յերկիրն Ծոփաց՝ որ տեղ Մարութայ Եպիսկոպոսն, Հայոց, Յունաց և Հռովմայեցւոց երկիրներէն մինչև երկու հազարի չափ մարտիրոսաց մասունքներ ժողովելով շինեց եկեղեցի և քաղաք նոցա անուամբ, որ կոչեցաւ քաղաք Մարտիրոսաց։ (Տե՛ս Յայսմաւոր Յունիսի 1ն, Մարերի 25ն, երես 238, առաջին հատոր, տիպ Պօլսոյ)։ Թէպէտ բարեպաշտ իշխանն Պառշ հակառակ քրիստոնէական կատարելութեանց և միանգամայն իւր հանճարեղ և կորովի մտացն՝ երբեմն ի հրապուրմանէ այլոց տկարանալով և թուլանալով իւրեան առաքինական և խաղաղասէր կամքից, զՍիմէին և զԱքիթոփելին խորհելով՝ սուրբ և առաքելական Սիւնեաց Աթոռոյ վերայ կամեցաւ օգտել և խախտել Սիւնեաց գաւառանի մեծավիճակ սահմանը, որ հին և հարուստ ժամանակք հայրապետական կանոնիւ հաստատուած կայր, և Վայոց ձորոյ գաւառն և իւր գիւղերն յափշտակել և այլում Եկեղեցւոյ ժառանգիցնել, սակայն երբէք զարմանալու չէ այդ մասին, վասն զի ըստ ասութեան Սողոմոնին ,,գոյ և քուն իմաստնոյ,,՝ իբրև մարդ կարող էր երբեմն խոտորիլ յաջ կամ յահեակ և դարձեալ հաստատուիլ, բայց ինչպէս ակն յանդիման կտեսնուի պատմական տեղեկութեանց

մէջ, Նախասկիզբն այդպիսի անբարեխառնութեան և չար խորհրդոցն և մեծին Պռոշեայ բարեպաշտութեան խախտող եղած է Ապրակունեցի Սեդրակ անուն քահանայի Յովհաննէս անուն որդի մի՝ որ անզգաստաբար մոլեգնելով սնափառութեան և ագահութեան չար ախտիցն, խաբեբայութեամբ Եպիսկոպոս ձեռնադրուելով տէր Կոստանդին Հայոց Կաթուղիկոսէն՝ կուգայ Երնջակու սուրբ Կարապետի վանքըն, և այլազգի հազարապետ մի պաշտպան իւրեան առնելով՝ կըսկըսի այնուհետև յայտնապէս ցոյց տալ ապստամբութեան ժանիքներն Սիւնեաց Աթոռոյ դէմ. (կարծես թէ իրաւի այն չարութեան անքուն ապստամբ ոգին է՝ որ ցայսօր ժամանակի իբրև զարանակալ օձ մահաթոյն խնամօք կդարմանուի և կպահպանուի Ապրակունեաց գիւղի բնակչաց մէջն). ստութեան պատճառներ յօդելով՝ թէ Երնջակայ վանուց մէջ թաղուած լինելով մարմինք հայրապետաց՝ (որոնք Սիւնեաց Եպիսկոպոսաց ժամանակներն Երնջակայ բերդի ամրութեան համար պատահմամբ եկած են այն տեղ և վախճանուած)՝ ուրեմն և վանքն է աթոռ Եպիսկոպոսաց, և այլազգի հազարապետի բռնակալ ուժովն Երնջակու գաւառն յափշտակելով իրեն կսեփհականացնէ. ուստի այս ազգաւեր և տխմար հանգամանքներից հարկադրուած, Նորաշենից Տէր Սարգիս և Տաթևոյ Տէր Յովհաննէս Եպիսկոպոսունքն հրամանաւ և օժանդակութեամբ իշխանաց իշխանին մեծին Տարսայիճի Օրբէլեանց կգնան առ երջանիկ Կաթուղիկոսն Հայոց Տէր Յակոբ, որ գնի Կոստանդեայ Կաթուղիկոսին, և կծանուցանեն նմա այս ցաւալի աղէտն ու պառակտումն մեծի վիճակին Սիւնեաց. որից ստանալով ապստամբների համար նզովից և բանադրանաց թղթեր, դարձան իւրեանց տեղերն, Նախապէս տուին մեծին Պռոշեայ իւր նամակն, զոր կարդալով մինչև ի սիրտ և ի հոգի տխրելով՝ վերստին ցոյց տուեց իւր սրտի կատարեալ զղջումն և ապաշխարութիւնն. իսկ Յովհաննէս անուն ապստամբ Եպիսկոպոսն՝ իսպառ զրկեցին Եպիսկոպոսութենէն. ահա ինչպէս կընկարագրէ Սիւնեաց պատմագիր Ստեփաննոս Եպիսկոպոսն Օրբէլեանց. «Ահա զայս հոգացեալ Եպիսկոպոսացն դարձան այսրէն և «եկեալ ի տեղի իւրեանց նախամատուցին զնամակն Պռոշայ. և նա «ըստ հանճարեղ մտացն և մեծայոյս հաւատոյն մեծաւ զղջմամբ «զմեղս խոստովանելով եթող զհակառակութիւն, և ձեռագիր պայ«մանաւ հաստատեաց ուխտ երդման, զի այլ ոչ ևս մատնեսցէ

„կամ ինքն և կամ յիւրոցն ղայնպիսի բանսարկութիւն։ Եւ դար-
„ձոյց անդրէն զԹեմն և օրհնեցաւ յԵպիսկոպոսացն։ Իսկ զմիւսն
„որ յԵրնջակ ուխտեցեալ ըմբռնեալ ցուցին զնզովաբեր նամակն և
„հանեալ կողոպտեցին ի նմանէ զձև Եպիսկոպոսութեանն, և ան-
„զէն հաստատեցին զգաւառն ամենայն„։ Գր. . . . , տես Մոս-
կուայ։ Թէպէտ բազմութիւ են մեծին Պռոշայ դիւցազնական գործ-
քերն և պանծալի յիշատակքն, զոր մի մի ի թիւ արկանելն ինձ դը-
ժուարին էր. սակայն այսչափս բաւական թող համարում նոցա բա-
րեպաշտական և քրիստոնէավայել կենաց և կենցաղավարութեան
մասին։

6) Վասակ է որդի Խաղբակայ և եղբայր մեծին Գրիգորի և
Պլէնայ, գաւառաւ Խաչենեցի, երևելի ազատազնեայ, հաւատով ուղ-
ղափառ քրիստոնեայ և ազգաւ Հայ. ունէր երեք որդիք, Պապաք,
զոր ընդ մեծին Գրիգորի Պարսիկք սպանեցին Գանձակում, Մզկէմ
և բարեպաշտն Պռոշ. սա էր այր քաջ և անուանի, որ մեծ եր-
կիւղ և սարսափ տարածել էր Թշնամեաց վերայ. սորան Վրաց Լա-
շայ Թագաւորն և եղբայրն Ամիր Սպասալար Զաքարէի Աթաբէկ
Իվանէն, Բարկուշատայ, Վայոց ձորոյ և Գառնոյ գաւառներին կող-
մնակալ են կարգել, որ մեծաջան աշխատութեամբ և երկոց վաստա-
կօք բազմիցս նահատակելով քրիստոնէական սուրբ հաւատոյ վերայ,
և Աստուածային Տաճարաց փառաւորութեանց յարաժամ հոգւով
ցանկանալով՝ օրհնեցաւ գովեցաւ ամեն աշխարհներից։ Սա՝ դար-
ձեալ յաւուրս Աթաբէկ Իվանէին միաբանելով Արփայեցի Ախթար-
մայ մեծանուն իշխանի հետ, քաջութեամբ սպանելով Խաղբիկ Խո-
րասան Հրասեկայ բերդապահն, առին բերդն. որն կոչուի Վայոց
ձորոյ գաւառում մօտ սուրբ Կարապետի և Նորավանից՝ զոր այժմ
Համայու կ'կոչեն. մեծանուն իշխանս լսելով որ Սիւնեաց Գահերէց
տէր Ստեփաննոս Մետրապօլիտն իւր կենդանութեան ժամանակն
գրաւական է դրել Հաչապօնու գաւառի Անծապայ վանուց Պետրոս
անուն Եպիսկոպոսի մօտ, Աստուածամուխ սուրբ նշանը, տէր Յով-
հաննիսի կոչեցեալ Ուսագ խաչն, Թիթեղնակապն և կամարակապն,
և ցանկալով այն երեք հրաշագործ սուրբ նշանքն տանել դնել իւր
սեփհական վանքն Կեչառուս, ուստի զանոնք բռնաբար կառնու
Պետրոս Եպիսկոպոսէն և կտանի իւր վանքն, միայն Ուսագ սուրբ խա-

չըն կընծայէ Աթաբէկ Իվանէին, զոր զնի ժամանակաց Վահրամ Ճգնաւորի որդի տէր Սարգիս Եպիսկոպոսն շնորհէր. Օրբելեան քաջարազունկ Լիպարիտի և Նորա 1000 ոսկի տըզըն ի գնոյ առնըով Աթաբէկ Իվանէէն՝ վերստին դարձոյց ի Նորավանս սրբոյն Ստեփաննոսի։ Նաւագ սուրբ Խաչն այժմ կգտնուի ի Հոչակաւոր վանքն սրբոյն Սաավթէի և ունի իւր վերայ առանձին պահարան ու. յիշատակագիր ըստ այսմ. պահարան արծաթապատ քառակուսի, մի թիզ և հինգ մատնաչափ երկայնութեամբ, յետուստ կուսէ գեղնազոյն թիթեղ, իսկ ի մի երեսն արծաթի ոսկեզօծ դուռն, ի վերայ որոյ պատկեր Իջման Յիսուսի ի խաչէն, ի թևսն Խաչին երկուք Հրեշտակք, յաջմէ և յահեկէ պատկերք Մարիամեանց, ի վերին թևսն խաչին Յունական արձանագիր. ունի և զհայերէն յիշատակագիր ի վերին կողմն ըստ այսմ. « Յիշատակ է Ղազանչեցի Դաւիթ . . . . Թ. ՌՄԼԴ,,. ի ներքոյ դրանն ի մէջ ոսկեզօծ արծաթի խաչի ի միջակին է մասն ի Կենաց Փայտէ, ի ծայր արծաթի դրան արծաթի շղթայիւ կախի փոքրիկ Խաչ արծաթի ոսկեզօծ երկփեղկեան, յորում է մասունք սուրբ Առաքելոյն Թադէոսի, որոյ յիշատակագիրըն գրի յեզերս խաչին ըստ այսմ. « պահարան է սա յորում եղեալ կան Նշխար սուրբ Առաքելոյն Թադէոսի ի վայելումն տէր Մ կ ո ր ն ր ի թվ. ՌՃԴ.։

Սոյն ազատագնեայ Վասակ իշխանս դարձեալ յաւուրս Աթաբէկ Իվանէին և Նորին հարազատի Շահնշահի և Աւագին կշինէ Կեչառիսու սուրբ Կաթուղիկէն, կնուիրէ յիշատակկք Ա շինակ, Ա տուն ի Նորաշէնք և Ա, ի Կարենիս. սա մի քարընկեց հեռի սուրբ Կաթուղիկէէն ՌԿԹ Հայոց թ. Նմանապէս շինեց փոքրիկ Տաճար յանուն սուրբ Յարութեան իբրև մատուռ գերեզմանացի ի յիշատակ մեծանուն տոհմին իւրոյ համօրն ննջեցելոց ի Քրիստոս, ուր ինքն ևս կարծեմ թաղուած պէտք է լինի։

7) Տղայ Գրիգոր է յազատացն Խաչենոյ՝ որդի Սմբատայ և Թոււըն մեծին Վախթանկայ կողմնապետի Արցախական աշխարհին. սա էր՝ Հէջուպ Ամիր Սպասալար Աւագին որդւոյ Աթաբէկ Իվանէին և մեծ վերակացու Նորա տանը, ամեն ժամանակ կգտնուէր Նորա հետ զանազան պատերազմաց մէջ ամենակարևոր կերպիւ ցոյց տալով իւր քաջագործ արիութիւնն մանաւանդ զովելի հաւատարմութիւնն առ.

պայազատ տէրն իւր, և երբ մեծն Աւագ Թաթար զօրաց ամէնի արձակմունքից խոյս տուած բնակչաց հետ ի միասին ամրացել էր Կայանայ անառիկ բերդն, — Գրիգոր տղայն տեսնելով՝ որ իւր տէրն՝ նմանապէս բնակիչքն երկար ժամանակեայ անգութ պաշարմունքից անհնարին տառապանօք կնեղին և ոչ մի կողմից չ'կայ օգնութիւն, ուստի ի գերութիւն և ի փրկութիւն տառապեալ բազմութեան՝ ես և ի ցոյց իրաւացի անձնազոհ ծառայութեան իւր տիրոջն, իջնելով բերդէն անվեհեր հոգւով արիութեան գնաց և յայտնեցաւ Թաթարաց գլխաւոր Զարմաղա Խանին, որոյ հետ՝ ի գլխոց մեծ Սպասալար Աւագին, հարկաւորն և պատշաճն խօսելով, ապա մեծ իշխանն ես եկաւ ներկայացաւ Խանին. որից նա անակնունելի անչափ շնորհ և պատիւ մեծարանաց ընդունելով՝ դարձեալ անխախտ և անվտանգ մնաց սեփհական երկիրն իւր ձեռքն, և Զարմաղա Խանըն անքակտելի սէր և միութիւն հաստատեց իւր հետ մինչև յաւիտեան. իսկ Գրիգոր տղայն՝ փոխանակ այն ամենուն խնդրեց Աւագ մեծ իշխանէն Գետկայ վանքն իւրեան հանգստեան շիրմի տեղ, զոր և ստացաւ գոհութեամբ, ինչպէս կերևի վանուց արձանագրութիւնից.

8) Հասանն է որդի Վախթանկայ թոռն մեծին Սմբատայ Թագաւորազնոյն, և տէր իշխան Հաթերքու, Հանդաբերդու, Խաչենաբերդու և Հաւքախաղացի. սա՝ քառասուն տարոյ չափ պայազատելով աւագ իշխանութիւն՝ այլազգի թշնամեաց դէմ գործեց մեծամեծ յաղթութիւնք և անպարտելի արիութիւնք, որով միշտ և հանապազ ի խաղաղութեան և ի հանգստեան կպահպանէր իւր սեփհական երկիրն՝ ազատ միանգամայն թշնամեաց վտանգաւոր արձակմունքից. բարեպաշտ իշխանս մեծագումար ծախիւք նորոգեց Կեչառիսու վանքն, զոր ազգն Նեստրաց խոպան աւերել էր, և իւր կենդանութեան ժամանակն ամեն ստացուածքն և հայրենի ժառանգութիւնքն բաժանելով իւր վեց որդւոց վերայ, կթողուն ինքն և իւր մեծահաւատ ամուսինը աշխարհական կեանքն և բաւականաչափ բաժին իւրեանց հետ առնելով կգնան և կ'կրօնաւորին մինչև իւրեանց մահն առ հարազատն իւրեանց տէր Գրիգոր, որ էր Առաջնորդ փառաւոր ուխտին Դադի վանից, որն կառուցած է յանուն Դադի աշակերտի Թադէոս առաքելոյն, Տրտում գետոյ մօտն մեծ խորաձորի մէջն Կուռէկից՝ որ այժմ ,,Քօլանիկ,, կ'կոչի. սոյն մենաստանս էր

գերեզմանատուն մեծ իշխանիս տոհմին և Եպիսկոպոսարան Ներքին և վերին Խաչենոյ և Հանդաբերդու ։

9) Վախթանկն է որդի մեծին Սմբատայ Թագաւորազնոյն և հայր բարեպաշտ իշխանին Հասանայ․ սա ես՝ ի իւր պայազատութեան ժամանակն քաջութեամբ զանազան պատերազմներ մղելով՝ ապա հայկական ՈԼԱ թուին իւր բարեպաշտուհի Նանայ աղախնոյ հետ միաբանելով հոչակաւոր ուխտին Դադի վանից, սեփհական ստա-ցուածքէն իբրև յաւիտենական ժառանգութիւն կուտայ վանուցն Զեթխայ-ձորի բերդին մինչև պղին Խողենակոյ, և ի տարին մշտա-պէս երկու նուագ յանուն իւրեանց պատարագի օր կսահմանեն սըր-բոյն Յովաննու և Սրբոց Վարդանանց հրաշափառ տօներն ։

10) Չիթաղեանքն են Հայազգի նշանաւոր և անուանի տոհմ և բնակիչ Տփխիս քաղաքի․ որոց մեծահամբաւ տոհմին Քրիստոսա-զօր սերունդն դեռ կշարունակէ, և են այժմ դարձեալ ականաւոր տոհմական պատուաւոր քաղաքացի և առաջին կարգի հարուստ վաճառական․ սոցա ցեղապետն է Նա ինքն Չիթաղ, որոյ որդիքն են Թադայն, մահտեսի Խօջայ Սուլխանն, և Զալինն, որդիք Թադային՝ Սուլէ, Զալի, Զօհրապ և Պապի, որդիք մահտեսի Սուլխանին Ստե-փաննոս և Բագի․ այս Աստուածապահ գերդաստանի առաքինական գործքերն և քրիստոնէական կատարեալ ջերմեռանդութիւնքն իբրև պայծառ ամենապատուական ակն կփայլին յայտ յանդիման ամե-նեցուն յարձանագիրս սուրբ անապատին Սևանայ և հռչակաւոր մենաստանացն Գեղարդայ և Հաղարծնոյ․ Հայկական ՌՃԳ թուին՝ ի Հայրապետութեան Հայոց Տեառն Փիլիպպոսի՝ երեքին հարազատ-քըն Սուլխանն, Զալն և Զօհրապն մեծագումար ծախիւք կուտան նորոգել սուրբ Առաքելոց հրաշափառ Տաճարն Սևանայ անապա-տին, և ի Հայրապետութեան Տեառն Յակովբայ Ջուղայեցւոյ Հայ-կական ՌՃԺԳ թուին վերստին գալով սուրբ անապատն յուխտ և յերկրպագութիւն որբազան վայրացն, և նորոգել տալով սուրբ Աստուածածնի Տաճարն ի յիշատակ հանգստեան կենդանեացն իւրոց և ննջեցելոցն, կնուիրեն հոգեցատուր յիշատակք, արծաթի կան-թեղ, խաչ, բուրվառ և սկիհ, և կխոստանան իւրեանց ապրանաց շահի տասանորդն․ ՌՃԴ թուականին Հայոց կնորոգեն մեծափառ

կաթուղիկէն սուրբ Գեղարդայ և կնուիրեն արծաթի մշտավառ կանթեղ, որոյ ծախքն ես վճարելով, և ՌՃՂ թուականին կնորոգեն Հաղարծնոյ մեծահռչակ ուխտի սուրբ Աստուածածնի և սուրբ Գրիգորի եկեղեցիքն։ Իրաւ ի՜նչ մեծ փառք և պարծանք կվիրընծայեր Զիթողեան մեծանուն տոհմին՝ եթէ այժմեան տոհմականքն իւրեանց նախնեաց առաքինական և քրիստոնէավայել գործոցն հետևելով՝ իբրև կարողութեան տէր անձինք, եթէ ո՛չ բոլորովին, գոնէ մասամբ իսկ, իւրեանց նախնեաց անմահ հոգւոց համեմատ անմահացնէին և յաւերժացնէին նոցա նուիրական յիշատակքն։

11) Մինչդեռ արևմտեան մեծազօր տէրութիւնն Ռուբինեանց կայր հաստատուն և արծուանիշ դրօշակն Քրիստոսապսակ Ստեփաննեան Լևոն Արքային մեր կհովէր արթնութեամբ Հայաստան աշխարհի վերայ, 646 Հայոց թուականին արևելեան Հայաստանումը ծագեցան փառաւոր իշխանաց իշխանքն Զաքարէ և նորա հարազատն Իվանէ, որոց մեծանուն տոհմին նախահայր ոմանք Պարսից Արտաշէս Գ. երկայնաբազուկ թագաւորին կհամարեն, որ է որդի Բաէքքսեայ առաջնոյ. իսկ Արղութեանց կոչուելու պատճառն ոմանք դոցա ցեղապետն կ'կարծեն եղած է Արղութ Հայ իշխանն, որոյ անունը կյիշատակի յարձանագիրս մեծահռչակ Սանահնոյ սուրբ ուխտի արտաքին գաւթի հիւսիսային որման վերայ կից զանգակատանը, բայց պատմական տեղեկութեանց հաւատ ընծայելով՝ հաւանական է այսպէս ես կարծել, որ դոցա սերնդոց ոմանք՝ Մողոլաց Արղուն անուն Խանի առաջին՝ որ էր մեծ ոստիկան Մանգու խանին, երկար ժամանակ մեծամեծ քաջութիւններ և հաւատարիմ ծառայութիւններ անելով՝ իբրև պատիւ նորա անուամբ կոչուած լինին «Արղութեանք». ես այսպէս, ուրեմն ինչպէս մէկը կախորժէ՝ այնպէս և թող ընդունի. ապա բարեպաշտ իշխանն Սարգիս առաջին, որդի սորա Վահրամ, որդի սորա Զաքարիա, որդի սորա Սարգիս Ամիր սպասալարն՝ որ Վրաց Գէորգի թագաւորէն կարգուած էր վերակացու մայրաքաղաքին Անւոյ և է հայր քաջարազուկ իշխանացըն Զաքարէի և Իվանէի, որդի Զաքարէի էր մանուկն Շահնշահ, սա ևս կոչեցաւ ի վերակացութիւն Անւոյ և սպանուեցաւ Հուլաւ մեծ կողմնակալէն Թաթարաց. որդի Իվանէի Սարգիս՝ զոր «Աւագ» կոչէին և էր անժառանգ, որդիք Շահնշահի Զաքարէ, Մխարգրձել

Աւագ, Սարգիս, Արտաշիր, և Իվանէ: Ինչպէս Վարդան Բարձրբերդ-
ցի և Կիրակոս Գանձակեցի պատմաբաններն հաւաստի կանեն մեզ.
սոքա իբրև հատուած Բաբելական խիլէն բաժանուելով Մարաց
ազգէն եկան յարեցան առ Բագրատունիս, որոնք կնստէին Ձորագե-
տումը այն է Լօռի քաղաքումը, և առան իրեանց բնակութեան
տեղ Խոշոռնի յարևելեան կողմանէ Գուգարաց աշխարհին, որոց
. . . . . տոհմին սերունդն դեռ կյարատևէ և են երևելիք և
ականաւորք Ռուսիոյ հզօր Տէրութեան առաջին: Քաջազօր իշխան-
քըն Զաքարիէ և Իվանէ լինելով հաւատաւոր անձինք, գտան մե-
ծամեծ պատիւ և արտօնութիւն Վրաց Թամար Թագուհուցն: Զա-
քարէն կարգուեցաւ Ամիր Սպասալար այս ինքն մեծ Սպարապետ
ընդհանուր Վրաց և Հայոց, և Իվանէն՝ Աթաբէկ՝ այն է հազարա-
պետ Վրաց աշխարհին և կողմանց ինչ Հայոց. սոքա շատ անգամ
մեծամեծ յաղթութիւններ, արիական քաջութիւններ ցոյց տալով
Վրաց թագաւորութեան դրանն, և օր ըստ օրէ զօրանալով փառօք
և պատուովք, աջակցութեամբ միմեանց դիմեցին Պարսից վերայ.
զօրս և նկուն և խոպառ անզօր առնելով՝ թափեցին նոցա ձեռքից
Հայաստան աշխարհի շատ տեղերն, որով և հաւաստեաւ այնու-
հետև սոցա հայկական անպարտելի բազկաց արիութեան համբաւն
տարածուեցաւ ամէն աշխարհն Պարսից և Հոնաց: Սոքա սպանեցին
Շահի Արմէն Սուլտանը, գնացին պատերազմաւ Մարանդու, և Ար-
տաւիլու վերայ, որ կընկնի Ատրպատական աշխարհի Դաւրէժ քա-
ղաքի հիւսիսային արևելեան կողմն, որոց և տիրելով՝ նոցա շրջա-
կայ գաւառներն խոպառ աւերեցին, և Պարսից աղօթարաններն՝ զոր
«Մուշուրչի» կանուանէին, որոնք և երկիւղից ապաստանուած էին
իրեանց աղօթատունն. քաջարի իշխանն Զաքարէ նախանձ հայ-
րենի և ազգային վրէժխնդրութեան յանձն բերելով՝ հրամայեց
բերել նաւթ, ձէթ, ցողուն և խոտ, և աղօթատան շրջապատն
պատրաստելով իբրև հնոց մի բաբելական՝ խոպառ այրեց բոլոր բազ-
մութիւնն այսպէս ձայնելով. «Թողէք մեզ՝ ազգային նախանձու
«վրէժխնդրութեամբ հայրենեացս դէմ եղեռնագործ դաւաճանների
«վարձուց փոխարէնը այսպէս հատուցանել, թողէք դոցա. մինչ
«խոպառ այրել փոխանակ Հայոց այն իշխաններին՝ զոր տաճիկք
«այրեցին Նախիջևանայ եկեղեցումը, և փոխանակ Հայոց քահա-
«նայից Բագուանայ այն է Բագարան քաղաքի՝ որ կընկնի արևմ-

«տեան կողմն յատն Մասեաց, զոր Կոտայքն և Մուղկրքն մարթե-
«ցին, որոց և արևներն իբրև նախատինք Հայութեան թափելով
«եկեղեցւոյ պարսպաց վերայ մինչև ցայսօր սևացած տեղերն կե-
«րևին»։ Երբ այսօրինակ գովելի յաղթութիւններն յաջողեցան
մեծազօր իշխանացս, սոքա այս ամեն յաջողուածքն խնկապէս երկ-
նային համարելով՝ ուստի այնուհետև սկսան բանալ Աստուածա-
հաճոյ առաքինութեանց և ընաշխարհիկ մեծագործութեանց սխրալի
հանդէս հոգևոր, փայլել գործովք բարեաց և բազմապատիկ դիւցազ-
նական քաջութեամբ և յաղթականութեամբ, ձեռք զարկին շինել
բազմաթիւ վանօրայք, որոնք՝ այո՛ են՝ յաւէտապէս Տաճար Աստուա-
ծային փառաց մեծութեան և բնակարան բանաւոր հօտին Քրիստո-
սի, որոնք այո՛ բարեպաշտ իշխանացս անեղծանելի և անկողոպտելի
փառաց համար զարդ ի զարս անմահ վկայք են, վերստին նորո-
գել եկեղեցիքն՝ որոնք վաղ ժամանակաց հետէ յԻսմայէլական հի-
նից աւերած էին, պայծառացնել և հարստացնել զանոնք զանազան
հոգեցատուր յիշատակքներով, և բազմացնել դասք հոգևոր պաշ-
տօնէից. և երբ այս ամեն Աստուածպաշտութեան գովելի գործերն
կատարեցին և խաղաղացուցին իւրեանց իշխանական հովանաւորու-
թեան ներքոյ գտնուած աշխարհներն, որով և օր քան զօր կայ-
ծառանային եկեղեցական սրբազան պաշտամունքն և կբարձրանայր
եղջիւր քրիստոնէական ճշմարիտ հաւատոյ, ապա այնուհետև մեծ
Սպասալարն Զաքարէ տեսնելով որ շատ անգամ գրեթէ մշտապէս
ինքն և իւր քրիստոնեայ զունդն պատերազմական դաշտերի մէջն
բացօթեայս մնալով կզրկուէին փրկարար խորհրդից սրբազան Պա-
տարագի, մանաւանդ երբ Վրացիք ունէին իւրեանց հետ սեփհական
քահանայք, շարժական սեղան սրբազան խորհրդոյ, կանոնին ըստ
սովորութեան հաղորդութիւն, կլսուէր մշտապէս ձայն խորհրդաւոր
երգոց պաշտամանց, կտեսնուէր և կկատարուէր ըստ պատշաճի տօ-
նակատարութիւնք, և այդ ժամանակներն Հայոց միջից վերջացած լի-
նելով այդպիսի սովորութիւն, Վրացիք միշտ կմեղադրէին մեծ Սպա-
սալարն թէ ձեր մէջն ճշմարիտ քրիստոնէութեան երևոյթք երբէք
չտեսնուել, ուստի մեծն Զաքարիէ այս մասին գրեթէ մինչև ի մահ
տխրելով՝ իբրև ճշմարիտ բարեպաշտ Քրիստոնեայ նախանձ բարի
յանձն երևեցնելով՝ ցանկացաւ իւր հոգեկան բարետոհմութիւնն այո՛
իրականապէս ցոյց տալ, այն է վարուիլ ըստ նախնեացն սովորու-

